ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

## ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

## Ա

## ՊԱՏՄԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ԵՐԵՎԱՆԻ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ- 2006

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց, Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Ա., Պատմագիտական ուսումնասիրություններ /Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը . - Եր., Երևանի համալս. հրատ., 2006, 652 էջ + 1 էջ ներդիր:

Նիկողայոս Ադոնցի երկերի առաջին հատորն ընդգրկում է հին և միջնադարյան Հայաստանի քաղաքական պատմությանն ու հոգևոր կյանքին, սոցիալ-տնտեսական հարաբերություններին նվիրված հիմնական աշխատությունները: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են ոչ միայն հայագիտության, այլև ընդհանուր պատմագիտության բնագավառում:

Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:

Ա $\frac{0503020913}{704\ (02)\ 06}$ 2006

ԳՄԴ 63.3(2Հ)

ISBN 5-8084-0704-4






FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

ԵՊՀ հրատարակչությունը իր երախտագիտությունն է հայտնում

**ԳԱԼՈՒՍՏ ԳՅՈՒԼԲԵՆԿՅԱՆ**

հիմնարկության Հայկական բաժանմունքի տնօրեն

դոկտոր **ԶԱՎԵՆ ԵԿԱՎՅԱՆԻՆ,**

մեծանուն հայագետ Ն. Ադոնցի երկերի ժողովածուի

հինգհատորյակի հրատարակությունը նախաձեռնելու և

հովանավորելու համար:

***Խմբագրական հանձնաժողով***
***Հովհաննիսյան Պ. Հ., Մաղոյան Ա. Գ., Ստեփանյան Պ. Գ.***

***Հատորը հրատարակության պատրաստեց***

***Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ***

ապա՝ Ա. Խաչատրյանի («Տորք Անգեղեայ» հայ հին մատենագրության և նոր բանասիրության մեջ», տե՛ս «Տեղեկագիր» Գիտության և արվեստի ինստիտուտի, Երևան, 1931, № 5, էջ 40-64) ուսումնասիրությունները: Միայն տարակուսանք են առաջացնում Ա. Խաչատրյանի՝ ինքնարդարացում հիշեցնող խոսքերը, թե ինքը «Աղոնցից բոլորովին անկախ է կատարել Տարքու-ի և Տորքի նույնացումը իրը աստված» (**Ա. Խաչատրյան,** նշվ. աշխ., էջ 42, ծան. 2): Խնդրի վերաբերյալ վերջին ուսումնասիրություններից տե՛ս **Г. Д. Вардумян,** Дохристианские культы армян, «Հայ ազգագրություն և բանահյուսություն», հատ. 18, Երևան, 1991:– Էջ 96:

## ՀԱՅ ՀԻՆ ՇԻՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ
(էջ 97)

Գրված է 1927 թ. Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հին հայոց շինականությունը» խորագրի ներքո՝ «Հայրենիք» ամսագրում (1927, 5-րդ տարի, № 12, էջ 81-85: 1927, 6-րդ տարի, № 1, էջ 147-154, № 2, էջ 94-100): Երկրորդ անգամ լույս է տեսել «Պատմական ուսումնասիրություններում» (Փարիզ, 1948, էջ 157-205): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Հ. Մանանդյանի ուսումնասիրությունը, որի լրիվ վերնագիրն է «Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին մարզպանության շրջանում» լույս է տեսել Երևանի պետական համալսարանի «Գիտական տեղեկագրի» առաջին համարում (1925, № 1, էջ 3-45, տե՛ս նաև առանձին հրատարակությամբ՝ Երևան, 1925): Ն. Աղոնցի «Հայ հին շինականությունը» փաստորեն Հ. Մանանդյանի նշված աշխատության գրախոսականն է: – Էջ 97:

2. Ակնարկում է այն իրողությունը, որ Հ. Մանանդյանը սկզբունքային շատ հարցերում տարակարծիք էր իր "Армения в эпоху Юстиниана" մենագրությունում առաջ քաշված համապատասխան տեսակետներին. «Նիկ. Աղոնցի մեկնաբանությունը, - գրում է Հ. Մանանդյանը, - թեև շատ հետաքրքիր է ու հրապուրիչ, սակայն ունի առարկելի կետեր և թվում է ինձ խիստ վիճելի»: – Էջ 99:

3. Խոսքն իր "Фауст Византийский как историк" ուսումնասիրության մասին է (տե՛ս "Христианский Восток", 1922, т. 6, стр. 235-272): Սույն ուսումնասիրությունը նախատեսված է լույս ընծայել Աղոնցի Երկերի երկրորդ հատորում: – Էջ 114:

4. Ակնարկում է Նորայր Բյուզանդացու «Կորյուն վարդապետ և նորին թարգմանությունք» ուսումնասիրության (Տփղիս, 1900) համապատասխան բառաքննությունները: – Էջ 122:

5. Նկատի ունի հետևյալ ուսումնասիրությունները "И. М. Кулишер, Лекции по истории экономического быта Западной Европы, Петроград, 1918. G. Knapp, Bauernbefleing, B. I, Einleitung, 1887: – էջ 129:

6. Ակնարկում է գերմանացի գիտնական Գեորգ Կնապպին: – էջ 132:

7. Հին և միջնադարյան Հայաստանի շինական դասի դրության մանրամասն հետազոտությունը կատարել են Խ. Սամուելյանը, Թ. Ավդալբեգյանը, Բ. Հարությունյանը, Ս. Երեմյանը, Ս. Պողոսյանը, Ս. Հակոբյանը, Լ. Բաբայանը և ուրիշներ: Հարցի պատմագրությունը տե՛ս **Լ. Հ. Բաբայան,** Հայաստանի ֆեոդալիզմի դարաշրջանի պատմության ուսումնասիրությունը սովետահայ պատմագրության մեջ, Երևան, 1970: – էջ 140:

8. 1935 թ. հունիսի 15-ին և 1936 թ. հոկտեմբերի 16-ին Ն. Ադոնցը «Ճորտատիրության իրանական դրսևորումը» խորագրով զեկուցումներ է կարդացել «Ժան Բոդեն» ընկերության գիտական նստաշրջաններում: Հետագայում այդ զեկուցումների համառոտագրությունը, որպես հոդված, լույս է տեսել նույն ընկերության գիտական հոդվածների ժողովածուում (Բրյուսել, 1937, էջ 135-153): Այդ հոդվածի հայերեն թարգմանությունը ծրագրվել է լույս ընծայել Ադոնցի Երկերի լրացուցիչ 6-րդ հատորում:– էջ 140, ծան. 1:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՈՍԿԵՀԱՆՔԸ

(էջ 141)

Գրված է 1928 թ. Փարիզում: Բնագիրը գտնվում է Բոստոնում՝ «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1928, 6-րդ տարի, № 3, էջ 86-95): Այնուհետև լույս է տեսել «Պատմական ուսումնասիրություններում» (Փարիզ, 1948, էջ 206-222): Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Խոսքը վերաբերում է Երևանի պետական համալսարանի «Գիտական տեղեկագրում» լույս տեսած Աստվածատուր Խաչատրյանի «Հույն պատմիչների վկայությունը հին Հայաստանի ոսկեհանքերի և նրանց տեղի մասին. տեղագրական ուսումնասիրություն» (1925, № 1, էջ 47-69) հետազոտությանը: – էջ 141:

2. Ակնարկում է ավստրիացի պատմաբան Հ. Մոնցկայի (H. Montzka) «Die Landschaften Grossarmeniens bei griechischen und römischen Schriftstellern, Wien, 1906» աշխատությունը: – էջ 141:

3. Նկատի ունի "Армения в эпоху Юстиниана" մենագրության առաջին՝ «Հայաստանի քաղաքական բաժանումը» գլխում քննարկման առարկա դարձած համապատասխան նյութը (մասնավորապես տե՛ս անդ, էջ 24-26): – էջ 142:

# ՀԱՅ ՀԻՆ ՇԻՆԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հայ անդրանիկ համալսարանը հրատարակել է իր անդրանիկ **«Գիտական տեղեկագիրը»**:

Առիթը Հայաստանի խորհրդայնացման հնգամյակն է և Տեղեկագիրը նվիրված է հայ բանվոր-գյուղացիներին (իմա՝ բանվորներին և գյուղացիներին): Հրատարակությունը տոնական երևույթի հանգամանք ունի և օրվան պատշաճ հոդվածն է «Դիտողություններ հին Հայաստանի շինականների դրության մասին»: Հեղինակն է պ. Հակոբ Մանանդյանը, Երևանի համալսարանի պրոֆեսոր և իմ անձնական բարեկամը (1):

Հոդվածագիրը իրավամբ գանգատվում է, որ մեր անցյալը մնում է տակավին մութ, «մանավանդ հայոց պատմական կյանքի ներքին իրական կողմերը, նրա սոցիալ-տնտեսական ու քաղաքական առանձնահատուկ հիմնական ուժերը»: Հետևում է տխուր հայտարարություն, որ այդպիսի աշխատություններ չկան և որ իր հոդվածը նախապատրաստական աշխատանք է միայն, մի շարք դիտողություններ, որոնց նպատակն է պարզել «շինական դասի դրության հավանական ընդհանուր գծերը մարզպանական Հայաստանում»:

Հոդվածագիրը հայտնում է, որ շինականների վիճակը «ամենադժվար ուսումնասիրելի խնդիրներից մեկն է», որ մատենագրական աղբյուրները հատկապես այս մասին «լուռ ու մունջ» են: Այսպես է խոսում հոդվածի ներածականում: Իսկ վերջը, ուսումնասիրությունը կատարելուց հետո, հայտարարում է, որ շինական դասի դրությունը «այնքան էլ մութ և անորոշ չէ, ինչպես այժմ կարծվել է»: Ասել է, թե դժվարությունները հարթվել են, մութ խնդիրը լուսավորվել:

Տեսնենք, ի՛նչ լույս է բերում պ. Մանանդյանը շինական դասին: Առաջին միտքն այն է, թե հնում համայնական հողատիրություն է եղել Հայաստանում՝ Արշակունյաց շրջանում և նրանից հետո:

Սակայն իրավամբ կարելի է խրտչել այս նորությունից: Հայաստանի երկու խոշոր հարևան պետությունները, իրանական արևելքը և բյուզանդական արևմուտքը, որոնց ազդեցության տակ կերտված է հայ կյանքը, ծանոթ չեն բնավ համայնական հողատիրության: Արևելյան ֆեոդալականությունը գիտե տոհմային հողատիրություն, բայց ոչ համայնական: Ինչ վերաբերում է Բյուզանդիային, մինչև վերջին ժամանակներս արդարև

ընդունված կարծիք էր, որ համայնատիրական տնտեսություններ են եղել, բայց այժմ հերքված է այս տեսությունը՝ խնդրին նայող պատմական հիշատակարանների լուրջ քննությամբ:

Այսպիսի պայմաններում ի՞նչ հիմ ունի պ. Մանանդյան համայնատիրական կարգեր որոնել Հայաստանում:

## I. ԲԱԺԱՆՈՒՄՆ ԸՍՏ ՄԱՐԴԱԹՎԻ

Մովսես Խորենացին պատմում է, որ Վաղարշակ թագավորը սահմանեց, որ միայն անդրանիկ որդին ապրե իր մոտ՝ արքունիքում, իսկ մյուսները գնան բնակելու Հաշտենից գավառը: Արտավազդ թագավորը նույն նկատումով իր մոտ է պահում միայն երեց որդուն, իսկ մյուսներին հատկացնում է Աղիովիտ և Առբերանի գավառները:

Տիրան արքայի ժամանակ Հաշտեանցիք նեղ գտնելով իրենց սահմանները, խնդրում են, որ ընդարձակե իրենց ժառանգությունը: Թագավորը հրամայում է, որ մի մասը գնա Աղիովիտ և Առբերանի՝ իրենց ազգակիցների մոտ: Սակայն վերջիններս տրտնջում են, առարկելով, որ իրենց հողն էս պակաս է: Տիրանը վճռում է «ոչ այլ ժառանգութիւն տալ նոցա, բայց զոր ունին **հաւասար** տրոհել յինքեանս: Զոր **բաժանեալ ըստ մարդաթուի,** գտաւ պակաս ժառանգութիւն բնակողացն Հաշտենից. վասն որոյ բազումք ի նոցանէ եկեալ ի գաւառն Աղիովիտի եւ Առբերանոյ»[1]:

Ընդգծածս բառերն են այն գայթակղության քարը, ուր սայթաքել է պ. Մանանդյան:

«Հողերի հավասար և ըստ մարդաթվի բաժանումը, որքան հայտնի է, համայնական հողատիրության որոշ կարգ է», - կոչում է հոդվածագիրը:

Ճշմարիտն ասած, ինձ զոնե հայտնի չէ և շատ տարօրինակ է լսել, որ հողի հավասար **բաժանումը** նշան լինի համայնական կարգի: Բաժանման որևէ եղանակ ինքնին չէ կարող հատկանիշ համարվել հողատիրության: Այն, ինչ որ բնորոշում է հողատիրությունը, **սեփականության** իրավունքն է ամենից առաջ: Որպեսզի հողը համայնական համարվի, պետք է ցույց տրվի, որ նրա իրավատերը համայնքն է: Իսկ բաժանման եղանակը համայնական արժեք կունենա միայն այն դեպքում, երբ նա ծագում է համայնքից որպէս արտահայտություն նրա իրավունքի:

Արդ Խորենացու մոտ խոսքը համայնական հողի մասին չէ, այլ տոհմական, որ բնավ շփոթելու չէ: Եվ հողի տնօրենը համայնքը չէ, այլ թագավորը, որ գործում է կամ վեհապետության և կամ անդրանիկության իրավունքով:

---

[1] **Մովսես Խորենացի,** Պատմութիւն Հայոց, Գիրք Բ, 62, Վենետիկ, 1865, էջ 140:

Բացի սրանից, Խորենացու խոսքերն անգամ անճիշտ և կամ միակողմանի են ըմբռնվում պ. Մանանդյանի կողմից: Որպեսզի իր ենթադրության համար ազատ դաշտ պատրաստե, նախ նա փորձում է հերքել իմ անձնական տեսությունս (2): Ուստի կուզեի այստեղից սկսել, որով և դյուրություն տված կլինենք ընթերցողին ավելի մոտեն հետևելու խնդրի էության:

Խորենացու խոսքը աշխատել ենք արժեցնել, ի թիվս ուրիշ ապացույցների, բացատրելու համար սեփական կոչված ազատության ծագումը: Մեր խորհրդածությունները միաժամանակ պարզում էին նաև սեփական կամ սեպհական բառի այժմյան նշանակությունը:

Մատենագիրները **սեպուհ** են կոչում հայ իշխանական տան բոլոր արու զավակներին, բացի տան գլխավորից, որ է **նահապետ** կամ **նախարար**: Երեքն էլ պարթևիկ բառեր են: **Սեպուհ**, լրիվ ձևը սեպուհր, է պարթև **visapuhr**, որի առաջին մասը նույնն է, ինչ որ լատին **vicus** «գյուղ», հույն *οἶκος* «տուն», իսկ երկրորդը նշանակում է որդի: Ուրեմն սեպուհ նշանակում է բառացի տան, տոհմի որդի:

Նահապետ բառի ստուգաբանությունը ևս որոշ է, գոնե ինձ համար: **Նահ** համապատասխանում է պարսից **naf** բառին, հնագույն ձևն է **napha**, եվրոպական հավասարակը հնչում է **nabha**, որից լատին, հույն և գերման **umbilicus, omphalos, nabel** բառերը: Բոլորի հիմնական միտքն է «պորտ», փոխաբերաբար «սերունդ, ցեղ»: Նահապետ ասել է, թե նշանակում է բառացի «ցեղապետ, տոհմապետ»:

Հավանորեն նույն **նահ** բառն է թաքնված և **նախարարի** մեջ, որի պարսիկ ձևը թվում է թե է **Nahodar**, և հիշվում է Ամմիանոս Մարկելինոսի մոտ որպես հատուկ անուն: Թերևս **նախ** բառի ազդեցությամբ **նահարարը** դարձել է նախարար: Նշանակությունը՝ «ցեղի, տան պահապան», գրեթե նույն ինչ որ նահապետ: Երկուսին փոխարինող զուտ հայկական բառն է **տանուտեր**:

Հայ նախարարները մի մի տուն էին, տոհմ, և նրանց հողերը տոհմի անբաժանելի սեփականությունն էր: Անմիջական տերն ու տնօրենը տան ավագ անդամն էր, նահապետը, տանուտերը: Անդրանիկության սկզբունքը համարվում էր անձեռնմխելի: Տան մնացյալ արու զավակները կոչվում էին սեպուհ:

Նախարարական հողին իրավական բնույթ էր տալիս զինվորական ծառայությունը: Զորահավաքի սովորույթը չկար հնում: Ամեն մի իշխանական տուն պարտավոր էր որոշ թվով մարտիկ տալ: Զինվորական տեսակետից շատ էլ ցանկալի չէր իշխանական հողերի բաժանումը մանր կտորների: Մի տուն, որ ի վիճակի էր մի քանի տասնյակ հեծյալ տալ, բաժան բաժան լինելով, կարող էր հասնել այնպիսի դրության, որ նրա

մասերը առանձին առանձին անզոր կլինեին անգամ մի մի ձիավոր պահել: Երկրի պետին, հարկավ, ձեռնտու չէին մեծամեծ տներ այնքան զորեղ, որ սպառնային թագին, բայց բնավ նպաստավոր չէր նաև տների պառակտումը:

Սակայն, խոսքն այն մասին չէ, թե ինչ էր պատճառը նախարարական իրավակարգի կայունության և ի՞նչ նրա քայքայման: Փաստ է, որ սկզբում իշխանական տները կազմում էին մի մի միություն տանուտերի իրավասության ներքո, իսկ հետո միությունները քակվում են սեպուհների կենտրոնախույս ձգտումների հետևանքով: Սրանք գերադասում են դուրս գալ տոհմական շաղկապից, ստանալով իրենց հասանելի բաժինը: Սեպուհի բաժինը կոչվում է սեպուհական = սեպհական: Հետագայում այս բառը ստանում է այժմյան նշանակությունը, որ արդյունք է սեպուհի և սեպհական բաժնի հարաբերության իրավական բնույթի:

Պետք է նկատել, որ հնդիկ-եվրոպական լեզուներն ընդհանուր բառ չունին սեփականության գաղափարը արտահայտելու համար: Ապրելով տոհմային կյանքով հնդիկ-եվրոպական ցեղը տակավին անծանոթ է եղել սույն հասկացողության: Միմիայն ցեղի բաժանումից հետո է, որ առաջ է եկել սեփականության գաղափարը և ամեն ազգ մշակել է, հորինել յուրովի բառ ըստ յուր կյանքի պայմանների և հասկացողության: Անգամ լատին և հույն լեզուները չունին ընդհանուր արտահայտություն: Լատին **proprius**, որ ընդունված է արդի եվրոպական լեզուներում, սղումն է **propatrius** բառի, որ է անդրհայրական: Ասել է թե սեպհական է համարված այն, ինչ որ եղել է հորից առաջ, ուրեմն հասել է կամ մնացել է պապերից:

Հունարենում *ἴδιος* ստուգաբանորեն նշանակում է «զատ, առանձին» և ստացել է սեփականի իմաստ:

Մեզանում ևս նման մտածությամբ գործ էին ածվել թերևս տոհմային սեփականություն արտահայտելու համար հայրենի, բուն, բնիկ բառերը:

Ագաթանգեղոսն ասում է՝ «զբուն եւ զձեր սեպհական Պահլաւն», Փարպեցին՝ «զբնիկ եւ զսեպհական տեղիս նախնեաց», «զբնիկ սեպհական կալուած ազգին Արշակունեաց»: Կարծես հին **բնիկը** մեկնվում է նոր **սեպհականով**:

Ագաթանգեղոսն ունի անգամ բնություն սեփականության իմաստով՝ «**զբնութիւնն** պարթևական, զձեր սեպհական (և ոչ սեփական, ինչպես ունի Էջմիածնի հրատարակությունը՝ երկու ձեռագիր պահել են ստույգ ուղղագրությունը) Պահլաւն ի ձեզ դարձուցից»[1]:

Փավստոսն ասում է Ս. Ներսեսի մասին. «շրջէր ընդ իր **ծառական**

---

[1] **Ագաթանգեղոս**, Պատմութիւն Հայոց, Էջմիածին-Տփղիս, 1909, էջ 20:

իշխանութիւնսն, զի հնզեւտասան զաւառ իբրեւ **սեպհական ի բնմէ առանձինն առողջի** էր նոցա կարգեալ»:

Խոսքը եկեղեցու սեփականության մասին է և գծածս բառերը փորձեր են նույն գաղափարը արտահայտելու, որոնցից վերջին երկուսը մոտենում են հունական *ἴδιος-ին*:

Ագաթանգեղոս ասում է. «Ժողովուրդ **ծեռական** անուանեցան» (գլ. ՀԴ), ուր ձեռական նույնանիշ է սեպհականի:

Ս. Գիրքը, որ ամենայն դեպքում մնում է լավագույն աղբյուրը բառաքննության համար, գործ է ածում սեպհական բառը ոչ հաճախ և այն տեղերում, ուր իմաստը վիճելի է նաև հունարեն և անգամ եբրայեցի բնագիրներում:

Միայն մի տեղ հույն «բնակէ ինքն եւ որք ընդ նմա», *οἱ παρ᾽ αὐτοῦ* հայը դարձնելով բավականին ազատորեն` «բնակեցաւ սեպհական զնդաւն հանդերձ»[1], թվում է թե, հասկանում է **սեպհական** այժմյան իմաստով:

Մյուս դեպքերում սեպհական բառը համապատասխանում է հույն *περούσιος* հայտնի դարձվածքում` «եղիջիք դուք ինձ ժողովուրդ սեպհական յամենայն ազգաց»[2]: Նաև «ետու քեզ զՍիկիմ սեպհական արտաքոյ եղբարց քոց»[3]. հույնն ունի *ἐξαίρετον ὑπέρ τοὺς αδελφούς*, այսինքն` առավել քան եղբայրներդ ունին:

Պետրոսի թղթում «սեպհական ժողովուրդ» հույն *λαὸς εἰς περιποίησιν* է[4]:

Սեպհական ժողովուրդ չէ նշանակում Աստուծո սեպհականություն, այլ «հատուկ, առանձին, մյուս ազգերից զատ»: Տակավին հները, սկսած Ս. Հերոնիմոսից, դժվարանում էին ըմբռնել հույն *περούσιός εἰς περιποίησιν* նորալուր բառերի բուն իմաստը:

Եբրայեցերեն բնագիրն ունի **segullah** բառը, որ մասնավոր գանձ, գույք է նշանակում: Եվ այս իմաստը հանում են մեկնաբանները **Ա. Մնացորդաց, ԻԹ, 3, esti moi ho peripepoiemai chrusion kai argurion** խոսքերից, ուր հրեական բնագրում նույն **segullah** բառն է կարդացվում:

Դավիթ մարգարեն ասում է, որ տաճարի շինության համար կնվիրե ոչ միայն հասարակությունից հավաքած գումարը, այլև իր անձնականը, «ինչ որ ինքը պատրաստել է իր համար», ուրեմն իր սեփականը: Հայ թարգմանիչը չի հասկացել նախադասության իմաստը. «եղեւ ինձ զորս նուիրեցից տեառն ոսկի եւ արծաթ» բնավ, չէ տալիս հույնի միտքը: Բնագրում խոսքը

[1] **Ա Մակաբ.**, ԺԳ, 53:
[2] **Ելք**, ԺԹ, 5: **Օրէնք**, Է, 6; ԺԴ, 2; ԻԶ, 18: **Տիտոս**, Բ, 14:
[3] **Ծննդոց**, ԽԸ, 22:
[4] **Ա Պետրոսի**, Բ, 9:

այն ոսկու և արծաթի մասին է, որ Դավիթը դիզել, պատրաստել է իր համար, մինչ հայը կարծում է, որ գույքը պատրաստած է տիրոջ համար, ուստի հույն բառը հայը թարգմանում է **«նուիրեցի»** և ավելացնում է **տեառն** բառը:

Եթե թարգմանիչը լիներ այն անձը, որ թարգմանել է Մակաբայեցվոց գիրքը, պիտի ասեր՝ «է իմ սեպհական ոսկի եւ արծաթ»:

Հերոնիմոսը եբրայական **segullah** թարգմանում է **pecularis:** Լատիներեն **peculium** է կոչվում այն դրամը, որ հայրը նվիրում է որդուն կամ տերը՝ ծառային. և ուրեմն **pecularis** է ամեն գույք, որ կրում է **peculium**-ի բնավորություն: Դավթի գույքը, **segullah, է peculiaris** անհատական և զատ և ոչ հասարակաց և ընդհանուր: (Այսպիսով մոտենում է հույն *ἴδιος*-ին, որ հակադրվում է **demosios** «հասարակաց» կամ **koinos** «ընդհանուր» բառերին): Բայց և այնպես ո՛չ հույնը և ո՛չ հայը **segullah** չեն թարգմանել այն բառով, որ նշանակում է սեփական:

Հույն *ἴδιος*-ի դեմ ամենուրեք հայն ունի յուր **մեր, ձեր** դերանունները, երբեք սեփական, որ է իսկական իմաստը:

Հայ սեպհական = *περούσιος* = **peculiaris** առանձին երանգ ունի, նշանակելով այն ինչ որ զատ է, ուրույն և ոչ նման ընդհանուրի:

Սեպհականը Ս. Գրքում իրապես իր տեղն է գործածված:

Տեսանք, որ սեպհական է այն բաժինը, որ զատված է տանուտերական ընդհանուր գույքից, և որ շուտով նույնանալու է սեփականության հետ:

Ղազար Փարպեցին պատմում է, որ Դենշապուհը հայ քահանաներին նահատակելուց հետո նրանց դիակների վրա, պահապան կարգեց ինը հոգի և նրանց թվում երանելի Խուժիկին, «որպէս զկարի **սեպհականազոյն** եւ պիտոյ իւրում հրամանի»:

Ինչ որ հրեից ժողովուրդն էր Եհովայի համար, նույնն է Խուժիկը պարսիկ պաշտոնյայի աչքում: Ո՛չ Խուժիկն էր սեփականություն պարսկի և ո՛չ հրեաները՝ Աստուծո:

Փարպեցու մոտ բառը պահել է տակավին սկզբնական երանգը, որպես «ուրույն, ընտիր, ընտրելագույն»[1]:

Սեպուհների բաժինը այսպիսով ուրույնության վրայից անցնում է սեփականության: Սեպուհների զատումը և առանձին ազնվական դաս կազմելը իբր սեպհական ազատություն, ապացույց է մեր մտքի: Ոչ միայն գաղափարները, այլև բառերը միանգամից չեն հասունանում, այլ պետք ունին ժամանակի:

---

[1] Վրաց Կյուրիոն կաթողիկոսը Սմբատ Վրկանին ուղղած թղթում անվանում է նրան **փառաւորականագոյն**, որ **սեպհականագոյնի** հին ձևն է: Ուխտանես խորթ է գտել և փոխել է «պատուականագոյն» («Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 170; Ուխտանես, Պատմութիւն Հայոց, Վաղարշապատ, 1871, էջ 97):

Սեպուհների անջատումն արդեն նշան է և հետևանք նախարարական ավանդների քայքայման: Արշակունյաց անկումը վճռական մոմենտ էր, որին հաջորդող պայմանները միայն արագացնել կարող էին երեկի կազմալուծումը: Պիտի թառամեր մանավանդ այն իրավակարգը, որ գերազանցորեն Արշակունի ծաղիկ էր:

Հինգերորդ և վեցերորդ դարերը համարել ենք սեպհական ազատության զարգացման շրջան: Մեզ առարկում են, որ երևույթն ավելի հին է, քանի որ Փավստոս հիշում է Մեհրուժան Արծրունու և Վահան Մամիկոնյանի **սեպհական** տները:

Հնությունը միշտ հնարավոր է. հասարակական երևույթները մի գարնան չեն բուսնում և մի աշնան թարշամում: Բայց բերած օրինակը անհաջող է: Փավստոսի գործը V դարից առաջ չէ. այնուհետև դավաճան իշխանները՝ կռթնած պարսկական ուժի կարող էին պահանջել և այն, ինչ որ օրինական չէր համարվում երկրի սովորույթների տեսակետից: Մասնակի հիշատակությունից շատ ավելի կարևոր է այն հանգամանքը, որ Փավստոս տակավին չգիտե սեպուհներին որպես ուրույն դաս: Նա որ սիրում է շարել «նախարարք, մեծամեծք, ավագք, կուսակալք, աշխարհակալք, ազատք, զորագլուխք, դատավորք, պետք, իշխանք» (Դ, 3) և անգամ սատրապք, ոչ մի անգամ չէ հիշում սրանց շարքին սեպուհք:

Մինչդեռ Փարպեցու մոտ տանուտերերի հետ միշտ հրապարակի վրա են սեպուհները և այնքան ինքնուրույն են թվում, որ ստորագրում են և կնքում քաղաքական դաշինք, ինչպես երևում է Վասակի դատից:

Մյուս կողմից հաստատապես գիտենք, որ Արևմտյան Հայաստանում նախարարական հողերի բաժանում տան այր անդամների մեջ արդեն ընդունված սովորույթ էր VI դարում: Այս մասին ճառում են հատկապես Հուստինիանոսի նովելները 536 թվից: Պարսկական Հայաստանում նախարարական կարգը ավելի կայուն էր, գուցե ավելի քիչ վտանգված, քան Բյուզանդական բաժնում: Սակայն սեպուհների անկախությունը փաստ կարելի է համարել VI դարում նաև պարսկական բաժնի համար:

Եթե պետք կա հասարակական պատմական երևույթները դնել ժամանակագրական թելի վրա, սեպհական ազատության թելը ընկնում է V և VI դարերի վրա: Ասել է թե այդ միջոցին է, որ սույն երևույթը զարգացել, տիրացել է կյանքին: Այս է ընդհանրացման իմաստը:

Խորենացու ժամանակ սեպհական պայազատությունը շարունակում էր վեճերի և հակառակության նյութ լինել: Իբրև ապացույց, որ Խորենացին քաջ ծանոթ էր քննածս հարցին, և ուրեմն նրա ժամանակ սեպուհների անջատումը տիրական երևույթ էր, հիշել ենք Պատմահոր տեղեկությունը Հաշտյանքի և Առբերանի ու Աղիովիտի Արշակունիների վերաբերյալ:

Կարևոր ենք համարել այն, որ հայ պատմիչը հնարավոր է գտնում հայրենական ստացվածքի բաժանումը տան զավակների մեջ հավասար և ըստ մարդաքվի:

Արշակունյաց տունը մի մեծ նախարարություն է. ինչ որ ընդունված է նրանց մոտ, կարելի է ասել, հասարակաց է և բնորոշ նախարարական միջավայրի: Խորենացու ենթադրած բաժանումը ոչ այլ ինչ է, եթե ոչ սեպհական իրավունքի արտահայտություն:

Մեր այս մեկնությունը պ. Մանանդյան համարում է վիճելի: Ինչո՞ւ, որովհետև հողի հավասար բաժանումը «խիստ արտասովոր է և անօրինակ կալվածատեր ազնվական դասի համար»,- դատում է պ. Մանանդյան:

Պատմահոր խոսքերը սխալ է ըմբռնում պ. Մանանդյանը: Այլ և կարծում է, որ հողի հավասար բաժանումը «համայնական հողատիրության որոշ կարգ է», և երկար պտույտներից հետո գտնում է և այն միջավայրը, ուր գործում էր այդ կարգը: Դուրս է գալիս, որ համայնատիրականները ոստանիկ կոչված մարդիկ են եղել, և սրանց մի մասն էլ այս պատճառով ազնվականների շարքից հանում է և դարձնում շինական: Բայց ինչպե՞ս է եղել, որ Պատմահայրը գյուղական սովորույթը վերագրել է ազնվական, այն էլ թագավորական, տան:

Սրա պատասխանն էլ է գտել պ. Մանանդյան. Խորենացին որպես թե սխալվել է, ոստանիկներին Արշակունյաց սերունդ համարելով:

Մեղադրել մատենագրին նախ քան փորձել պատշաճ և բավարար մեկնություն տալ նրա խոսքերին, հաճենարարելի մեթոդ չէ: Մարդաքիվ բառը, որ գայթակղության բուն քարն է, երկու կերպ կարելի է հասկանալ, համաձայն մարդ բառի կրկնակի նշանակության: Ոչ միայն մեր, այլև մեր հարևան պարսիկ լեզվում, **մարդ** ասելով հասկացվում է սովորաբար այր մարդ. և ինչպես երևում է այս գործածությունը հնուց է: Ս. Գրքում միայն մի անգամ է պատահում մարդաքիվ բառը իր լայն իմաստով[1]: Բայց նույն Ս. Գիրքը հաճախ կրկնում է Թվոց գրքի առաջին գլխում. «առէք զհամար ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայէլի, ըստ **թւոց**, ըստ գլխոց» և իսկույն բացատրում է. «ամենայն արու ի քսանամենից եւ ի վեր»:

Քանի որ պ. Մանանդյանը իրավամբ նկատում է, որ ֆեոդալ ոգուն ընդդեմ է հողի բաժանումը ըստ շնչի, բնական է սույն գիտությունը վերագրել և մեր Պատմահոր, և մարդաքիվ հասկանալ ոչ ըստ շնչի իմաստով, այլ բառի մյուս և մասնավոր նշանակությամբ, ըստ այր մարդկանց թվի:

Ըստ շնչի բաժանումը խոտելի է, որովհետև ֆեոդալ հողատիրությունը պարտավորում է զինվորական ծառայության և հաշվի առնել կարող էր միայն զենքի ընդունակ սեռը:

---

[1] **Եզ**, ԺԲ, 4:

Հաշտենից և Աղիովիտի արքայազն գանգատավորները, անշուշտ, կանայք չէին, այլ Արշակունի սեպուհները, որոնք միայն իրավազոր էին հող պահանջելու: Թագավորը հրամայում է եղած տոհմական հողերը բաժանել գանգատողների մեջ հավասար:

Ռուսական օրենքի տրամադրությամբ մեր գյուղերը ևս տեղ տեղ սովորություն էին արել պարբերաբար վերաբաժանել իրենց հողերը: Այսպիսի գյուղերում, որ անձամբ գիտենք, բաշխումը տեղի էր ունենում ըստ գլխի, որով հասկանում էին միմիայն այր մարդկանց: Քանի գլուխ է այս ինչ տունը, կամ քանի գլուխ հող ունի, նշանակում է քանի տղա անդամ ունի տունը: Երբ ուզում են շունչ հասկանալ, ասում են՝ քանի **բերան ուտող** ունի:

Այսպիսով, հին և նոր լեզուն իրավունք է տալիս Պատմահոր մարդաքիվը հասկանալ իրական իմաստով: Պատմահայրը սրանով կմնա ազատ ամբաստանությունից, խախտած չլինելով «կալվածատեր ազնվական դասի» սկզբունքները:

Բնական ուղին թողած, պ. Մանանդյանը ընկնում է ենթադրությունների աշխարհը և «կարելի»-ների վրայից սահելով հասնում մինչև ոստանիկները, որպեսզի նրանց անցնե, ինչպես հիշեցինք, «մարդաթուի» մեջ: Նախապես հերքում է մեր տեսությունը ոստանիկ կոչված ազատների մասին և տալիս նորալուր մեկնություն և ահա ինչպես:

## 2. ՈՍՏԱՆ ԵՎ ՈՍՏԱՆԻԿ

Խորենացու օրով ոստանիկ մարդիկ վաղուց իջել, անհետացել էին պատմությունից: Նա առաջին բանասերն է, որ հետաքրքրվել է նրանց հարցով և կամեցել է որոշել, թե ինչ էին ոստանիկ կոչված ազատները:

Քաղաքական և հասարակական հաստատությունների հայրը, նրա կարծիքով, միշտ նույն Վաղարշակն է, Արշակունյաց թագավորության հիմնադիրը: Նա է, որ կարգել է չորս պահապան գունդ արքունի դրան Հայկյան թագավորների զարմից և կոչել ոստան: Հետագայում պարսից թագավորները կազմել են նման գնդեր և դարձյալ անվանել ոստան: Արդյոք հին գնդերը սպառե՞լ էին, թե բռնի ոչնչացվել պարսիկների ձեռքով, Պատմահայրը չգիտե. պնդում է միայն այն, որ պարսիկները նրանց տեղը նոր գնդեր են կազմել **արքունի անվամբ**: Մի ուրիշ առիթով հաղորդում է, որ Տիգրանակերտի կողմերում ևս ոստան կոչված ազատություն կա, որ ծագում է Տիգրանուհու սերնդից:

Խորենացին այս խնդրում լոկ հետախույզ է, և նրա աղբյուրները հայտնի են, ուստի կարելի է նրան հանգիստ թողնել և դիմել անմիջական ակունքին:

Ոստանի և ոստանիկ ազատների մասին խոսողներն են Ղազար, Եղիշե և Փավստոս: Համեմատելով սրանց և այլուստ հայտնի տեղեկությունները, պարզել ենք ոստանի հաջորդական նշանակությունները՝ մերկացնելով նրա ստուգաբանական ծագումը: Ոստան նշանակում է սկզբնապես **շեմ,** դուռն, հետո **արքունիք**, ապա **արքունի կալված**:

Այս մեկնությունը կասկածելի է համարում պ. Մանանդյան և ապավինում է Հյուբշմանին, որի կարծիքը շատ ավելի հիմնավոր և համոզիչ է գտնում: Գերման հայագետի բացատրությամբ ոստան են անվանվել IV դարում այն երկիրները կամ քաղաքները, որ Արշակունի թագավորի (կամ թագավորական տան որևէ իշխանի) իշխանության տակ են գտնվել: Հյուբշման ոչ մի ստուգաբանություն չէ առաջարկում, այլ տալիս է լոկ ոստանի նկարագրական մեկնությունը: Գերման գիտնականի և մեր մեջ հակասություն չկա: Նրա մեկնությունը լրիվ չէ և չէ ընդգրկում այն բոլոր նշանակությունները, որ տալիս են մատենագիրները:

Այս բանը քաջ պիտի գիտենար, մանավանդ պ. Մանանդյանը, եթե իրոք «հավաքած ունի մատենագրական բոլոր վկայությունները ոստանի մասին»:

Ահա Փարպեցին ոստան է անվանում Ապար աշխարհի Վրկան քաղաքը, որ Արշակունի կալված չէ, հարկավ, և անվանում է կրկին անգամ: Վեհ Դենշապուհը հայ քահանաներին հանում է Նյուշապուհից և տանում Ռևան նահատակելու, հրամայելով, որ հայ չթողնեն քաղաքից դուրս գալ մինչև «ցժամանակ մտանելոյ ամենայն զօրացն արքունի **յոստանն**»: Եվ երբ որ թագավորը մտնում է ըստ կարգելո ժամանակին **յոստանն ի Վրկան**, հրավունք է տրվում հայերին երթևեկելու[1]:

Միհրան-Գուշնասպ վկայի հայրը Բաբա **ostandar** էր Մծբնի, ինչպես երևում է նրա վկայաբանությունից[2]: Ասել է, թե այստեղ ևս մի ոստան կա, որի պետը կոչվում է ոստանդար:

Այլևս ասորի հիշատակարանները ոստան են անվանում Արզն քաղաքը, Աղձնյաց աշխարհի կենտրոնը, և նրա շրջանը՝ տուն ոստանի: Այստեղի եպիսկոպոսը ներկա էր 554 թվի ժողովին[3]:

Ասել, որ այս վայրերը ոստան էին կոչվում, որովհետև արքունի կալված էին՝ Արշակունի թե Սասանյան, դժվար թե հնարավոր է:

Գիտենք նաև, որ ոչ միայն Արշակունի թագավորները, այլ մյուս իշխաններն իրենց ոստանն ունեին:

---

[1] **Ղազար Փարպեցի,** Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1904, էջ 94:

[2] **G. Hofmann,** Syrische Auszüge, p. 93.

[3] **I. A. Chabot,** Synodicon Orientale, Paris, 1902, p. 322-323.

Խորենացին Երվանդաշատը Կամսարականների ոստան է կոչում: Ղևոնդի համար Դարոյնքն է ոստան Բագրատունիների: Ռշտունյաց ոստանը կանգուն է ցարդ: Աղամակերտը Արծրունիների ոստան է ըստ Փարպեցու և այլն:

Այս բոլորը չեն զետեղվում ոստանի իբր արքունի կալված նշանակության մեջ:

Եթե ընդունեինք այդ նեղ իմաստը անհասկանալի կմնար Փավստոսի ոստան արքունի դարձվածը, որ գործ է ածում Անգեղ տան համար: **Արքունի** մակդիրն ինքնին վկայում է, որ կա և ուրիշ կարգի ոստան, որը արքունի չէ:

Արշակ թագավորը կոտորում է Կամսարականներին և «զգաւառսն յոստան ունէր»:

Տարօրինակ թյուրիմացությամբ պ. Մանանդյան այս, ինչպես և «ոստան արքունի» ասացվածքը, համարում է նպաստավոր Հյուբշմանի և ընդդեմ մեր տեսության:

Փավստոսը Պապի համար ասում է, որ եկեղեցու հողը «հատանէր յարքունիս»: Ղազար Փարպեցու մոտ պարսից թագավորը հրամայում է կաթողիկոսական տունը «յարքունիս ունել»:

Նույնանիշ արտահայտություններ են, ուր ոստանը համազոր է արքունիքին:

Եթե ոստանը միայն արքունի կալված լիներ, պետք էր ասել «զգաւառսն ոստան առնէր» և ոչ «յոստան ունէր»: Լեզվական նրբություն է, որ պետք չէ անտես առնել:

Անհարթությունները վերանում են, գտնելով իրենց լուծումը մեր առաջարկած ստուգաբանության մեջ: Նյութերի բանասիրական քննությունը թելադրում է, որ ոստան նշանակում է արքունիք, ապա արքունի կալված: Իսկ լեզվագիտական որոնումը բերում է այն հետևանքին, որ սկզբնական նշանակությունն է շեմք:

Պարոն Մանանդյանը հայտնում է, որ մեր ստուգաբանությունը ոչ մի հիմք չունի և որ մատենագրության մեջ չի գտել և ոչ մի հետք, որ արդարացներ մեր մեկնությունը: Առանց հիմքի ուրիշ հիմքի դեմ խոսել, անզգուշություն է:

Հայ ոստան բառը համարել ենք իրանական փոխառություն և կարծում ենք, որ նույնն է, ինչ որ պարսիկ **aslan,** որ ըստ Ջոնսոնի ընտիր բառգրքի նշանակում է. **threshold, king court, Royal palace**:

Ճիշտ այն նշանակությունները, որոնք ունի մեր ոստանը: Պարսիկ **astan** գրությունը, այսինքն՝ սկզբի **a** չպիտի շփոթեցնե ընթերցողին: Շիտակ ընթերցումն է **ostan:** Հայտնի ուստա «վարպետ» բառը գրվում է պարսկերեն **asta** և **astad** և կարդացվում է **osta** և **usta**:

Վուլլերս ևս գիտե **astan** բառը որպես **locus dormiendi** կամ **quiescendi**, այսինքն՝ ննջելու կամ հանգչելու տեղ և համարում է ծագած **ust** բառից, որ է ազդր, որով **ustan** իբրև «**a supino cubitu derivata**»: Ստուգաբանությունը թեև կասկածելի է, բայց կարևոր է այնու, որ **astan** հանելով **ust**-ից հաստատում է նույն բառի **ustan** հնչյունը:

Նույնը վկայում է մանավանդ ասորի **austn** գրությունը, որ և հիմ է տալիս բառի ստուգաբանական վերլուծման: Հավանորեն **stana** «տեղ» բառն է սկզբից ածանցված մի մասնիկով, մի նախդիր, թերևս **au, avi,** որ շաղկապվելով **stana** հայտնի բառի հետ, տալիս է նրան «մուտքի, շեմի, դրան» իմաստ:

Պարսիկ **astan** բառը ոչ միայն «սեամ, դուռն» է նշանակում, այլև «արքայական դուռն»: Այս իմաստը և գործածությունը պահվել է անգամ օսմանյան լեզվի մեջ: Բարձրագույն դուռը կոչվում էր բարձր ոճով **astan** կամ **astan i saadet** և նման ծաղկուն մակդիրներով: Այս մասին վկայում են դարձյալ նույն Զոնսոնը և ուրիշ բառգրքեր:

Ակներև է, որ բառս Իրանից է անցել Օսմանյան դուռը: Ասել է, թե ատեանով կենդանի խոսք է եղել Իրանում և նշանակել է նաև, կամ առավելապես, արքայական և իշխանական արքունիք:

Իրանից անցել է հայերին ուստան հարազատ հնչյունով և նշանակել է արքունի դուռն:

Պարոն Մանանդյան առնվազն անզգույշ է, երբ հայտարարում է, որ հայ մատենագիրները քրքրելով, հետք անգամ չէ գտել, որ ուստան նշանակեր դուռն:

Մեր այն աշխատության մեջ, որ քննադատում է պ. Մանանդյանը, բերել ենք զինվորական կոչված գահնամակը, հետաքրքրական գործ, հայ զինվորական ուժերին նայող: Այնտեղ նշանակված է, թե որ նախարարական տունը որքան հեծյալ ուներ: Վերջում կարդում ենք. «եւ լինի թիւ մարտիկ արանց որ ընդ ազգաւք յդ-ից հազարաց, թող զսպասաւորս **դրանն արքունի որ է ուստանդ,** որք ի պատերազմ ելանէին ընդ արքայի, եւ մարդպետական որ է ներքինի պահապան ի վերայ թագուհոյն եւ գանձուցն. և ընդ ամենայնն թիւ զօրացն Հայոց որ է ճարիւր եւ քսան հազարաց»:

Ահա մի կարևոր վկայություն, որ ուստանն է արքունի դուռն:

Հիշատակարանը որոշում է երեք տեսակի զորք՝ նախարարական, թվով 84 հազար, սպասավորներ **դրանն արքունի որ է ուստանդ,** որոնք պատերազմ էին ելնում թագավորի հետ, ասել է թե արքայական զորք, և վերջապես մարդպետական կամ թագուհու պահապան զորք: Խորենացին ծանոթ է եղել այս հիշատակարանին և այդ մասին պարզայորեն խոսած ենք «**Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում**» գործիս մեջ:

Հարկ է նշանակել, որ **որ է ոստան** վերաբերում է նախընթաց **դրանն արքունի** խոսքերին և ոչ թե սպասավորներին, որոնց նայում է **որք ելանեին** և այլն նախադասությունը:

Այսպիսով, մեր մեկնությունը հաստատվում է ոչ միայն ստուգաբանորեն, այլև մատենագրական նեցուկով, հակառակ պ. Մանանդյանի հայտարարության:

**Ոստան** բառի տեսակ տեսակ կիրառումները, գտնում են, իրենց բանալին: Ոստան կարող էր լինել և՛ Վրկանում և՛ Մծբինում, այլև Խորասանի և՝ Բաղդադի կողմերում, այս մասին ևս կան տեղեկություններ, ինչպես և Հայաստանի ոչ միայն թագավորական, այլև ամեն մի իշխանական նստավայր կարող էր ոստան կոչվել: Ասորի **austan** իրավամբ Շաբո թարգմանում է **residence de la dynastie**:

Հասկանալի է դառնում և «յոստան ունել» ասացվածքը որպես «յարքունիս ունել»:

Վերջապես, Արշակունիների արքունիքն ու աթոռանիստը, գուցե և կալվածը համարվում է ոստան **par excellence**:

Անցնենք ոստանիկին, որի կապը ոստանի հետ անուրանալի է: Պարսկական ձև է, որի հայկականն է ոստանեա, որ պատահում է Փարպեցու մոտ: Ոստանիկ ասել է նրանք են, որ ծագում են արքունի ոստանից: Բառացի՝ դրանիկ, իսկ իրական բովանդակությունը ի՞նչ է:

Փավստոսին ծանոթ է ոստան, բայց ոչ ոստանիկ: Փարպեցին և Եղիշեն են, որ գիտեն և հաճախ հիշում են ոստանիկ ազատներին:

Փարպեցու ոստանիկի փոխարեն Եղիշեն ունի **ոստանիկ յարքունի տանէ**: Կամ առանց ոստանիկի, միայն **յարքունի տանէ,** երբ խոսքը այրուձիո կամ զորքի մասին է:

Փավստոսի լռությունը պատահական չէ: Հավանական է, որ ոստանիկ ազատություն, կամ ավելի ճիշտ ոստանիկ կոչումը որոշ իմաստ է ստանում Արշակունյաց թագի անկումից հետո:

Խորհրդավոր է նաև Եղիշեի հավելումը՝ յարքունի տանէ, որ չէ խուսափել Խորենացու դիտող աչքից:

Արդարև արքունի տունը ընկած էր, ինչո՞ւ պետք է նրա անունը կրեին որոշ կարգի ազատներ և նրանց այրուձին: Պատմահայրը ստիպված է ենթադրել, որ թերևս տարբերություն կար հին ոստանիկ գնդերի և նոր **արքունի** կոչվածների միջև և թե վերջինս գուցե կազմված է պարսից կողմից:

Տիգրանակերտի ոստան ազատությունը, որի մասին խոսում է Խորենացին, արձագանք է Փավստոսի ցուցման, թե Անգեղ տունը Արշակունի ոստան էր: Աղձնի ոստան կոչումը ևս կարող էր ներշնչել նույն միտքը:

Ոստանիկ համարել ենք հավաքական անուն Արշակունիների ժա-

ռանգորդների բառի լայն նշանակությամբ, հաշվելով ոչ միայն Արշակունի սեպուհները, այլև արքունիքի և թագի բոլոր պաշտոնեությունը, նմանապես և այն անձինք, որ ազատություն և կալված էին ստացել Արշակունի թագից առանձին ծառայության համար և սերտորեն կապված էին նրան: Սրանք էին պարզևական կոչված հողերի տերերը: Արշակի դրան 900 բարձ է համարում Փավստոս: Ճիշտ է, որ Սասանյան Գահնամակը 600 բարձ ուներ, բայց Խոսրով Փարվեզի ժամանակ ավելի քան 3000 այր սպասավոր կար դրան: Սասանյանների պալատական և արքունի պաշտոնեությունը վայելում էր ազատներին հատուկ արտոնություն:

Նույնը պետք է ենթադրել և Պարթևյան արքունիքի համար, ուրեմն և հայ Արշակունիների: Սպասավորները և պաշտոնյաները պիտի կազմեին բուն դրանիկների կամ ոստանիկների դասը:

Արտաշեսի անկումով Արշակունի ցեղը չանհետացավ միանգամից: Բյուզանդական Հայաստանում փայլուն ներկայացուցիչներ ունեին քաղաքական ասպարեզում տակավին VI դարում, ինչպես Հովհաննես և Արտավան Արշակունիք, որ մասնակից էին կայսրության դեմ կազմակերպված ապստամբության:

Անտարակույս պարսկական բաժնում ևս հարատևեցին նրանց շառավիղները: Փարպեցին երկու ոստանիկ մարդու անուն է տալիս՝ «Զանդազան յոստանեայ տանէն և Պապ Արտակունեաց, որդի Բաբոցի, այր ոստանիկ»: Արդյո՞ք այս Արտակունիք Պապ անունը չեն ժառանգել Արշակունիներից, որպես հեռավոր արենակից կամ մերձավոր թագին, նման Չյունական, Վարաժնունի մանր տների, որ հաստատված էին Արշակունի հողերի վրա:

Կամենալով պարզել ոստանիկի բովանդակությունը, կարծել ենք, որ երեք կարգի մարդիկ՝ արենակիցներ, պաշտոնյաներ և պարգևականներ, կարող էին հավասարապես կոչվել ոստանիկ, որպես ընկած թագի մերձավորներ այս կամ այն մտքով:

Ռուսաց մոտ ազնուականություն նշանակող բառը ծագում է դուռն բառից, **dvorianin, dvorianstvo** նշանակում է «դրանիկ, դրանկություն»:

Ոստանիկների իրավական դրությունը համեմատել ենք սեպուհներին, ասելով, որ նրանք ընկած թագի նկատմամբ նույնն էին, ինչ-որ սեպուհները նախարարների հանդեպ:

Այս առթիվ պ. Մանանդյանը վերագրում է մեզ այն միտքը, իբրև թե սեպուհ անունը հատուկ ենք համարում միմիայն նախարարական ընտանիքներին, և ոչ նաև թագավորական տան և նշանակում է անգամ գրքիս էջը՝ 451:

Եթե բաց անենք այդ էջը, կտեսնենք, որ պ. Մանանդյան ուշադրությամբ չէ կարդացել ինչ որ շտապում է հերքելու: Կոչ արած տեղը խոսքս այն մասին է, թե տոհմային կենցաղը, երբ փոխանցվում է ֆեոդալականի, ի՞նչ փո-

փոխություն են կրում տոհմային տերմինները: Այն բառերը, որ սկզբում նշանակում էին ընդհանրապես տոհմի զավակներ, պահում են սովորական իմաստը, իսկ մի քանիսը, օրինակ, սեպուհ դառնում է հատուկ իշխանական տներին:

Այստեղ հակադրվում են ոչ թե իշխանական և թագավորական, այլ իշխանական և հասարակ ընտանիքները: Ասել է, թե գյուղացու որդին չի կոչվում սեպուհ, այլ իշխանի, և ոչ թե իշխանի որդին սեպուհ է, ինչպես պ. Մանանդյան է թյուրաբանել, իսկ թագավորինը չէ սեպուհ:

Իր հերքումներով պ. Մանանդյան ուղիները հարթված է համարում, որպեսզի վերջապես ավետե մեզ իր նոր խոսքը, վիճելի խնդրի վերաբերյալ:

Ոստանիկները, պ. Մանանդյանի կարծիքով, թագավորական ծագում չունին: Խորենացին սխալվել է նրանց թագավորազն համարելով: Ոստանը արքունիքի հետ կապ չունի: Ոստան է կոչվում արքունի հողը, ուրեմն Եղիշեի «ոստանիկ յարքունի տանէ» հասկանալու է աշխարհագրական մտքով և ոչ տոհմային:

Ասել է թե ոստանիկներն այն մահկանացուներն էին, որ ապրում էին թագավորի հողերի վրա: Սրանք գործ չունին ո՛չ թագավորի, ո՛չ սեպուհների և ո՛չ նախարարների հետ: Ապա ի՞նչ են: Չէ՞ որ ֆեոդալական դար էր և գին ունէր միայն արյունը, ազնվականությունը, իսկ ազատ դասի մեջ մուտք չէին կարող ունենալ բոլոր այն մարդիկ, որ ո՛չ թագավորական են, ո՛չ նախարար, ո՛չ սեպուհ:

Փակելով հնարավորության դռները պ. Մանանդյան ուրիշ ելք չէ գտնում քան մի սոսկալի թռիչք անել դեպի հեռավոր անցյալի մեծությունները: Նա, որ այնքան սիրում է մատենագրական տեղեկությունները, հանկարծ գիր ու գիրք մի կողմ է նետում և սլանում անգիր դարերի վրայից մինչև Հայկյան ժամանակները: Եվ ահա ինչ է բարբառում:

«Ոստանը կամ արքունի երկիրը Հայաստանի տանուտիրական բուն այն շրջանն էր, ուր գլխավորապես հաստատված պիտի լինէր հնդկա-եվրոպական եկվոր և տիրող ցեղը և հիմնած քաղաքական ամենանշանավոր իր կենտրոնները: Եթե այդպես է, չե՞նք կարող արդյոք ենթադրել, որ ոստանիկ դասը մեծ մասամբ բաղկացած պիտի լինէր հին այս տիրող ցեղի հատվածներից: Չէ՞ որ Հայկ Նահապետը, որի սերունդներից, Խորենացու կարծիքով, ծագել է ոստան ազատությունը, ոչ թե իրոք թագավոր է եղել, այլ առասպելական մի հսկա, որը դառել է հայազգի անվանադիր հերոսը և նախահայրը»:

Այս բանաստեղծությունից հետո պ. Մանանդյանը միանգամայն վստահելի է համարում Խորենացու վկայությունը, որ պարսիկները ոչնչացրին հին ռազմիկ դասը և նրա տեղ ստեղծեցին հլու արքունի գունդ:

Տեսանք, որ Խորենացու խոսքերը այլ բան չեն, եթե ոչ բանասերի փորձ մեկնելու Փարպեցու և Եղիշեի տեղեկությունները:

Ընթերցողը սակայն սպասում է գիտենալ, ի՞նչ էր այդ ոստանիկ կոչված ռազմիկ դասը, ինչո՞ւ էր նա ազատ և ի՛նչով էր ազատ: Այդքան դիմացկուն քաջարի դասը ինչպե՞ս է, որ նախարարական աթոռներ չէ գրավել:

Մեր քննադատի ցանկությունն է, որ նրանք ազատ լինեն, բայց շինական: «Ընդունելով, որ ոստանիկ են անվանվել Արշակունյաց բուն երկրի ազատները, որոնցից կազմված գունդն անվանվել է արքունի կամ **յարքունի տունէ,** ռժբախտաբար, աղբյուրների վկայությունից չի որոշվում, թե արդյոք այդ ոստանիկ ազատների դասին չե՞ն պատկանել նաև **ազատ գյուղացիներ**, որոնք կարող էին գոյություն ունեցած լինել հին Հայաստանում»: Այս դեպքում «հաւասար եւ **ըստ մարդաթուի»** հողաբաժանումը կարող էր վերաբերվել ոստանիկներին, եթե միայն գտնվեր մատենագրական աղբյուրների մեջ հաստատուն որևէ ցուցում կամ ակնարկ»:

Թվում է, թե տարաժամ է հիշել մատենագրական աղբյուրներ, երբ բանասերի միտքն այդքան հեռու է գնացել մատենագրությունից:

### 3. ՀՈՂ ԵՐԴՈՅ ԵՎ ՎԻՃԱԿ

Պարոն Մանանդյանը կարծում է, որ «հող երդոյ և վիճակ» տեքնիկ տերմիններ են:

Ագաթանգեղոսի ասելով, Տրդատը եկեղեցուն հող բաշխեց: Փավստոսը վկայում է, որ Պապ թագավորը, եկեղեցական հողերի մեծագույն մասը կտրեց:

Համեմատելով երկու մատենագիրների վկայությունը, պ. Մանանդյանը գտնում է, որ սրանք միմյանցից անկախ են այս կետում, որ նրանց տեղեկությունը հավաստի է և ստույգ, և որ Ագաթանգեղոսի վկայությունը, որ ավելի լրիվ է, համարելու է նաև ավելի ուղիղ:

Ասել, որ երկու մատենագիրներն անկախ են միմյանցից, կասկածելի է: Ասել, որ Ագաթանգեղոսն ավելի ուղղախոս է, քան Փավստոսը, նս առավել կասկածելի է: Եվ պնդել, որ նրանց տեղեկությունը պետք է ընդունել իբրև ստույգ, միանգամայն անընդունելի է:

Երբ Ագաթանգեղոսը և Փավստոսը բախվում են և կանգնած են դատի առաջ, Փավստոսն է միշտ արդար և Ագաթանգեղոս ամբաստանյալ և որքան «ընդարձակ» ճառե, նույնքան մեղավոր է:

Այս կետում Ագաթանգեղոսի աղբյուրը և ներշնչողը Փավստոսն է:

Պատմականորեն անընդունելի է, որ Լուսավորիչ կարենար եկեղեցիներ շինել «յամենայն աշխարհս, ի գաւառս, ի կողմանս, ի քաղաքս, յաւանս, ի շէնս, ի գիւղս եւ յագարակս»: Լոկ բառեր են, ճարտասանություն, զուրկ իրական բովանդակությունից: Հազար հինգ հարյուր տարի անցնելուց հետո էլ Հայաստանում կան գյուղեր, որ եկեղեցի չունին տակավին:

Բնավ հավաստի չի կարելի համարել, որ Տրդատ բոլոր եկեղեցիներին չորս չորս հող երդը տար ագարակներում, և յոթն յոթն՝ ավաններում: Հայ եկեղեցու հիմնադիրն առաջին քրիստոնյա տաճարները կանգնեց հին սրբավայրերի ավերակների վրա: Բավական էր, որ նրանց գույքը հասներ եկեղեցիներին, և նոր հողեր տալու պետք չէր ունենա բարեպաշտ թագավորը:

Այս տեղեկությունը Լուսավորչի կենսագիրը պարտական է Փավստոսին:

Պապ թագավորին սևացնելու նպատակով, ինչպես և Ներսեսին գովաբանելու, Փավստոսը դիմում է Տրդատի հեղինակության: Պապը «յեւթն հողոյն զհինգն հատանէր յարքունիս,-ասում է Փավստոս,-եւ զերկուսն միայն թողոյր երկուս հողս եւ ըստ հողոյն թողոյր երկուս երկուս առ գիւղ մի երէց և սարկաւագ և զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս եւ զորդիս երիցանցն եւ սարկաւագացն»:

Ի՞նչ է այս յոթն կամ հինգն կամ երկու հողը:

Հայոց լեզվի մեջ հողաչափության հատուկ բառեր կան, ինչպես արդու, գրիվ, օրավար, լուծ, կորի, որ պատմագիրը կարող էր գործ ածել տարտամ դարձվածքից խուսափելու համար: Հեղինակը գերադասել է անորոշությունը:

Ագաթանգեղոսն ավելացնում է «երդոյ» բառը, «չորս հողս երդոյ», «եօթն հողս երդոյ»: Արդյո՞ք այսու վերանում է անորոշությունը:

Պարոն Մանանդյանը կարծում է, որ «հող երդոյ» հատուկ հողաբաժինն է, որ տրվում էր «երդերին, այսինքն՝ տներին»:

Դժբախտաբար, լեզվական նրբությունները սպրտում են արգո բանասերի աչքից: Եթե նրա հայտնած միտքը ճշմարիտ լիներ և երդ նշանակեր **որոշ** մակարդակի հող, պետք էր ասել «երդ հողոյ», ինչպես ասում ենք մի տուն հող:

Ոչ մի հիմ չկա կարծելու, որ երդ ունեցել է նման նշանակություն: Երդերը հավասար և որոշակի մեծություններ չեն, որ նրանց հատկացրած հողերը հավասարամեծ լինեն:

Սակայն, պ. Մանանդյանին մոլորեցրել է այն հանգամանքը, որ հունարեն թարգմանության մեջ Ագաթանգեղոսի հող երդը դարձրած է **arouras:** Ասել է, թե հող երդը հատուկ հողաբաժին է հավասար **aroura**-ի: Բայց հույն արուրա կամ լատին **jugerum**, որ իրոք, հողաչափ է, մեծ բան չէ և անում է մոտ քառորդ հեկտար, գրեթե նույնչափ դեսյատին[1]:

---

[1] **Հերոդոտոս, II**, 168, հիշում է արուրա որպես Եգիպտոսում ընդունված չափ, հավասար հարյուր քառակուսի կանգուն տարածության: Կանգունը մեկուկես ոտ է և ոտը՝ 30 սանտիմետր, ուրեմն հարյուր կանգուն՝ 45 մետր: Եգիպտոս արքայական կանգուն համարվում էր մոտ 50 մետր: Իսկ **jugerium**, ըստ Պլինիոսի «Բնական պատմության», 18,3 մի ուղղանկյուն տարածություն է, 240 և 120 ոտ կողերով:

Այս հաշվով գյուղական երեցը Տրդատի շնորհիվ պիտի ստանար ոչ ավելի քան մի դեսյատին հող, իսկ Պապի կրճատումից հետո մի քառորդ դեսյատին: Մեծ առատաձեռնություն չէր բարեպաշտ Տրդատ թագավորի կողմից, իսկ Պապը, որքան և չար, չէր կարող կարծել, որ քառորդ հեկտարով կարելի է տուն պահել:

Պետք է ընդունել հետևապես, որ հայ թարգմանը գործ է ածել արորա ոչ իբրև հողաչափ, այլ բառի բուն իմաստով, որ է հող ընդհանրապես վարած, թե վարելի: Պարոն Մանանդյանի մեկնության միակ հիմք ընկնում է:

Ագաթանգեղոսը, ինչպես ասացինք, ներկա դեպքում կախված է Փավստոսից և ավելի բան չէ ասում, քան իր աղբյուրը:

Փավստոսը ասում է, որ Պապը եկեղեցու հողը կրճատեց և թողեց ամեն գյուղում երկուական հող, երկու հոգի, մի երեց և մի սարկավագ, պահելու համար, որով ամեն մեկին ընկնում է մի հող: Երեց և սարկավագ երկու հոգի չեն, երկու տուն են, երկու երդ: Երկու երդը երկու հող է ստանում Պապից. ստացած հողը, ուրեմն, կարելի է կոչել հող երդո: Տրդատը ավելի աստվածապաշտ էր, քան Պապը, ուստի նրան Ագաթանգեղոս վերագրում է երկու անգամ ավելի հող, քան Փավստոսը՝ Պապին, որ է «չորս հողս երդոյ»: Իսկ Փավստոսի «եօթն հող» մեկնում է այն մտքով, որ այդ ավաններն քահանայության բաժինն էր:

Ագաթանգեղոսը ոչնչով չի խանգարում Փավստոսի անորոշությունը: Պատասխանատուն մնում է ինքը՝ Փավստոսը: Ի՞նչ է նշանակում այդ անորոշությունը:

Պապը ոչ միայն հողն է կարճում, այլև «զայն ի սպասու կացուցանէր յիւր ի ծառայութեան զեղբարս եւ զորդիս երիցանցն եւ սարկաւագացն», այսինքն՝ եղած հողն էր ծանրաբեռնում նրանով, որ երեցների և սարկավագների որդիներին «ծառայության» էր առնում: Ծառայություն այստեղ նշանակ է հարկատվության:

Այս տողերը տանում են մեզ դեպի արտաքին աղբյուր և կասկածելի են դարձնում Պապին վերագրված միջոցները եկեղեցական հողերի դեմ:

Հարկավոր ‑բացատրությունը տալու էինք **«Փավստոս որպես պատմագիր»** հոդվածի մեջ, որի մի մասը միայն լույս տեսավ Պետրոգրադի **«Christianski Vostok»** ռուս հանդեսում (3):

Թեև վեճը տերմինի մասին է և պատմական հավաստիությունը աննշանակ է այս դեպքում, բայց հարկավոր ենք համարում մի քանի խոսք ասել:

Հայտնի է, որ Ներսեսի կյանքը այն ձևով որպես մտած է Փավստոսի պատմության մեջ կրում է օտար ազդեցության հետքեր: Կան գծեր, որ առնված են Բարսեղ Կեսարացու կյանքից:

Կեսարիո եպիսկոպոսը ժամանակակից էր Ներսեսին, տեսել էր նրա

մահը և անծանոթ չէր հայ իրադարձումներին: Նրա թղթերից մեկը ուղղված է ոմն կոմս Տերենտիոսի, որ նույն անձն է, որին հիշում է Փավստոսը և որը կայսեր զորքով եկավ Հայաստան, նպաստելու Պապ թագավորին գրավելու հայկական գահը: Կեսարացին պատկառելի դեմք է և մեծ հեղինակություն մեր եկեղեցու համար: Առանձին արժեք ունի մեզ այժմ զբաղեցնող հարցի տեսակետից Բարսեղի մի նամակը, գրված ոմն Մոդեստոսի: Կեսարիո հայրապետը գրում է, որ եկեղեցու պաշտոնյաները «**երեցները և սարկավագներն ըստ հին համարագրի արձակված էին հարկերից, իսկ այժմ նրանց ցուցակ են անց կացնում**»[1]:

Նամակագիրը հիշում է նաև, որ կան քահանաներ, որոնք ազատ են մնացել հարկից, ավելի ճիշտ որոշ արտոնություն են վայելում, և գանգատվում է, որ այդ արտոնությունը թողնվում է ժառանգաբար նրանց որդիներին: Հայրապետը գտնում է, որ այս ձևը անարդար է, որովհետև հաճախ որդիները անարժան են վայելելու ժառանգած առանձնաշնորհումը, ուստի առաջարկում է, որ իրեն թողնվի առանձնաշնորհումի բաշխումը եկեղեցականների միջև, որպեսզի արժանավորները ստանան և եկեղեցու պետը իրազեկ լինի քահանայության դրության:

Բարսեղի առաջարկը հասկանալու համար, ինչպես և արտոնության էությունը, պետք է գիտենալ հետևյալը: Հռովմեական կայսրության մեջ Դիոկղետիանոսի օրից հարկահանության հիմը կազմում էր **jugum**, որ նշանակում է բառացի **լուծ**, և իրապես հողի այն քանակը, որի արդյունքը բավական է մի մարդու ապրուստի համար: Հարկային համարագիրը կայանում է նրանում, որ պարզեն և գրի առնեն, թե ով որքան **jugum** «լուծ» հող ունի: Ամեն մի լուծի համար պահանջվում է որոշ հարկ:

Արտոնությունը, որի մասին խոսում է Բարսեղ Կեսարացին, արտահայտվում է նրանով, որ հայտնի չափով **juga** զեղչվում է: Եթե մեկն ունի 20 լուծ հող, արտոնվում է տալ հարկ միմիայն դիցուք կեսի համար, ուրեմն տասն լուծը բաշխվում է նրան:

Բարսեղի նկատողությունից երևում է, որ կային եկեղեցական պաշտոնյաներ, որ կարողացել էին ձեռք բերել առանձնաշնորհում, հետևապես, շատ հող ունենալով, քիչ հարկ էին վճարում, կամ գուցե միանգամայն ազատ էին: Հայրապետը հոժար չէ, որ որդիները ևս օգտվեն հայրերին զիջած արտոնությունից: Նա առաջարկում է, որ հայտնի, թվով անհարկ **juga** իր տրամադրության տակ դնեն, որպեսզի ինքը և իր հաջորդները արժանապես բաշխեն վաստակավոր երեցների միջև:

---

[1] **Migne,** Patrologiae cursus completus, 32, col. 509.

Կոստանդին Մեծը, ինչպես որ ակնարկում է և Բարսեղ Կեսարացին, արդարև ազատ էր հայտարարել եկեղեցական հողերը հարկերից: Օրենքը հասած է մեզ: Նրա հաջորդների օրով օրենքը թվում է, թե փոխված էր և եկեղեցականները գրված էին հարկատու, **adscripti censibus**: Բարսեղ Կեսարացու միջնորդության հետևանքը, իրական թե տեսական, այն պիտի լիներ, որ արտոնյալ երեցների և սարկավագների որդիքը և եղբայրները հարկի տակ պիտի ընկնեին: Ճիշտ այն, ինչ որ Փավստոսն է ասում, որ «զեղբայրս եւ զորդիս երիցանցն եւ սարկաւագացն» ծառայության առավ: «Եօթն հողի» վերածումը «երկու հողի» կարելի է կապել Բարսեղի ակնարկած **juga**-ներին:

Ասորի դատաստանագրքի մեջ **jugum** բովանդակում է որպես հողաչափ 20, 40 և 60 **jugerum**, նայելով հողի հատկության, այսինքն՝ 5, 8 և 12 հեկտար: Եթե ընդունենք, որ Պապը մի մի **jugum** է թողել գյուղական երեցներին և սարկավագներին, քանակը բավարար է: Փոքր Հայքում և Պոնտոսում 30 **jugera** էր համարվում **jugum**:

Պապին վերագրված գործը դժվար է անջատել այն երևույթներից, որոնք մտահոգություն էին պատճառում Բարսեղ Կեսարացուն: Արդյո՞ք կայսրերին հետևելով Պապը բռնացել էր իրոք եկեղեցականների հողային և անձնական դրության վրա, որ անկարելի բան չէ: Նույնչափ հնարավոր է, որ Բարսեղի կենսագրության մյուս գծերի հետ այս կետը ևս անցած լինի Ներսեսին և հարե Պապի անվան: Այս դեպքում ենթադրելու է, որ արևմտյան **jugum** չէ գտել հայացի արտահայտություն և փոխարինվել է հող ընդհանուր բառով:

Ամեն պարագային Փավստոսի վկայությունը պետք ունի ստուգման: Նրանից քաղած հող երբո չէ բնորոշում իր նախագաղափարի էությունը: Բնական է, որ չենք կարող հետևել պ. Մանանդյանի խորհրդածություններին, երբ հող երդո համարում է ոչ միայն հատուկ հողաբաժին, այլև «հավաստի նշան, որ հողատիրական համայնական կարգերը գոյություն են ունեցել **նաև հին Հայաստանում**»:

Բայց ինչպե՞ս հաշտեցնել համայնական հողատիրությունը թագավորի իրավունքների հետ: Ահա Տրդատը համայնքներից խլում է հող և տալիս եկեղեցիների սպասավորներին: Նշանակում է, թագավորը գերագույն սեփականության իրավունք ուներ հողերի նկատմամբ: Փույթ չէ. «համայնքները տնտեսապես ենթարկված լինելով թագավորի կամ նախարարների իշխանության, կարող էին միաժամանակ պահպանած լինել համայնական հողատիրության որոշ կարգեր»:

Նույն բանասերն է, որ հարուցանում է այս հարցերը և պատասխանում է ոլոր մոլոր, և հետաձգում, որ ուրիշ անգամ լուծե բարդ հանգույցները: Դարձ-

յալ վերադառնում է նույն «հող երդոյ» խոսքին, որ նրանից ճմլե մի նոր ճշմարտություն, այն է «հող երդոյ» հողաբաժինը կոչվում էր իբրև թե վիճակ: Ցարդ կարծել էր տալիս, որ հող երդո հենց գյուղական հատուկ հողաբաժինն է, այժմ դուրս է գալիս, որ հատուկ հողաբաժինն ուրիշ անուն ունի, որ է վիճակ:

Նախ՝ հերքում է մեր թռուցիկ մի խոսքը: Մեր ժողովրդի մեջ առանձին բառ չկա տան հողաբաժնի համար: Սովորաբար ասում են այս ինչի հողը, արտը, և նման ընդհանուր բառեր: Արդյոք հնո՞ւմն էլ այդպես է եղել: Աչքի առաջ ունենալով Եղիշեի մոտ պարսիկ մարզպանի հրավերը, այն միտքն էինք հայտնել, որ «կեանք, արար, կալուած» բառերը, որ այդտեղ գործ են ածվում ազատների, շինականների և եկեղեցականների գույքի նշանակությամբ, թերևս երբեմն հատուկ լինեին գյուղական հողաբաժնի:

Արդյո՞ք այս դեպքում կարելի է որոշել գյուղական հողի իրավական բնույթը: Մի հարց, մի ենթադրություն, որն եթե հետաքրքրություն ունի, այդ ավելի հաստատումն է, քան հերքումը: Արար, որ գրաբարում զանազան նշանակություն ունի, իսկ ժողովրդի բերանում մնացել է միայն «արար աշխարհ» ասացվածքում, հասարակ բառ չէ երևում:

Փավստոս ևս ասում է, որ Արշակի թագավորությամբ խաղաղացավ երկիրը՝ «Ժողովեցան ամենայն թագուցեալքն փախուցեալք կորուսեալք երկրին Հայոց... եւ յայնմ հետէ բնակեալք խաղաղութեամբ վայելեալք յիւրաքանչիւր **յարարս իւրեանց**»:

Չեմ կարծում, որ խոսքը միայն շարժական գույքի մասին լինի: Սովորական բառ չէ թվում նույնպես **կյանք** գույքի իմաստով, իսկ կալված հար և նման է եվրոպական **tenure**-ին:

Պարոն Մանանդյանը երկար ու բարակ վկայություններ է բերում, որ այդ բառերը հողի իմաստ չունին, որ կյանք համապատասխանում է հույն *βίος*-ին, որ Ավետարանում ապրուստի մտքով է գործածվում և, հետևապես, արհեստական բառ է: Կարելի է, բայց անհնար չէ նաև այն, որ հայերենում արդեն այդպիսի իմաստ ունեցել է, որ հույն *βίος* այդպես են թարգմանել:

Ամեն պարագային կարևորն այս չէ, այլ այն, որ իմ որոնած բառը, Մանանդյանի կարծիքով, «վիճակ»-ն է: Եվ իբրև ապացույց քաղում է Հայկազյան բառգրքից Մխիթար Գոշի մի խոսքը, Երեմիա մարգարեի մեկնությունից. «Վիճակ զանդաստանս **սովոր են** ասել, եւ **մեք** սովոր եմք զժողովուրդս **վիճակ** կոչել»:

Այս վկայությունը «պարզ ցույց է տալիս, որ վիճակ սովորաբար գործ է ածվել անդաստանների, այսինքն՝ արտերի կամ վարելահողի համար»,- եզրափակում է պ. Մանանդյանը:

Դժվար թե կարելի է ավելի դավաճան օրինակ բերել քան այս վկայությունը, որի իմաստը չէ հասկացել պ. Մանանդյանը: Մխիթար Գոշի

խոսքը Ս. Գրքի մասին է: **Ս. Գիրք** «սովոր են ասել վիճակ զանդաստանս», և ոչ թե հայերը: Իսկ **մենք**, հայերս, «սովոր ենք գժողովուրդս վիճակ կոչել»:

Բոլորովին հակառակ հետևանք. հայերը անդաստանին վիճակ չեն ասել:

Սրանով ընկնում են և մյուս երկու ապացույցները, որ քաղած են Ս. Գրքից: Հարկ ենք համարում, սակայն կանգ առնել նրանցից մեկի վրա, այն է՝ որ Ս. Գրքում հունական *σχοινισμός* բառը հայերեն թարգմանված է վիճակ: Եվ որովհետև հույն բառը նշանակում է պարանով չափած հողամաս, ուրեմն վիճակ ևս հողամաս է:

Նախ՝ ոչ միայն հողամասը, այլ ամեն գույք կարող է վիճակ կոչվել, ձևավոր ոճով, եթե վիճակով է ստացված: Երկրորդ՝ չի երևում, որ պ. Մանանդյանը ստուգած լինի Հայկազյան բառգրքի կոչումը: Հույն բառը, իրոք, դժվարության մեջ է դրել Ս. Գրքի հայ թարգմանիչներին: Տեսակ տեսակ բառեր են ընտրել միտքը մի կերպ արտահայտելու: Միայն վիճակ բառը չէ, որ տեսնում ենք *σχοινισμός*-ի դեմ, որ ավելի իմաստն է տալիս, քան բառը թարգմանում: Մի տեղ գործ է ածվում **պարանք** (II Թագ., Ը, 2 ), մի տեղ՝ **ապառանդակք** (Ես., ԾԴ, 3), մի ուրիշ տեղ՝ **լարաբաժին** (Ամովս Է, 18; Միք., Բ, 5) և վերջապես վիճակ՝ (Յես., ԺԷ, 15; Եզ., ԽԷ, 13): Եվ ոչ միայն *σχοίνισμα κληρονομίας* է թարգմանում վիճակ ժառանգության, այլև կլերոնոմիա առանձին, (Եզ., 47, 18) առանց սխոյնիսմաս բառի:

Չի երևում, որ վիճակ հող նշանակեր անկախ իրեական հասկացողությունից:

Եթե արդարև վիճակ արմատացած լիներ Հայոց մեջ որպես «համայնական-տոհմական հնագույն շրջանի տերմին», թարգմանիչները գոնե դոնե դուռ չէին ընկնի պատշաճավոր բառ գտնելու, այլ ամենուրեք կդնեին վիճակ, նման նահապետ, նախարար խոսուն բառերի:

Անտեղի է հիշել նաև Թովմա Արծրունու խոսքը արաբների մասին, թե «արկանէին վիճակս եւ լարս ձգէին», ապացուցանելու համար, որ լար ու վիճակ ձգելը եղել է հողաբաշխի ձև նաև հայերիս մոտ:

Միամտություն կլիներ կարծել, որ հրեշավոր Բուղային ուղեկցող արաբները հողեր գրավելու ուրիշ միջոց չունեին, քան լարով չափել և վիճակ ձգել: Թովմայի խոսքը ոճային սեթևեթ է և ոչ իրական պատկեր, մի ձևավոր ասացվածք, առնված Ս. Գրքից:

Հարկավ, այս չէ նշանակում, որ լարն ու վիճակը ծանոթ չէին հայերին, ինչպես և ծանոթ լինելուց բնավ չի հետևում, որ վիճակ տերմինիկ բառ լինի հողային իմաստով:

Մեղմ խոսելով, «վիճակ»-ը շատ ավելի վատ վիճակի մեջ է գտնվում, քան ակնարկածս երեք բառերը, որոնց տեղն ուզում է բռնել: Բայց և այնպես պ. Մանանդյանը կարծում է, որ իր «լեզվական այս նոր դիտողությունները»

գալիս են հաստատելու «իր ենթադրությունը համայնական հողատիրության գոյության մասին հին Հայաստանում»:

### 4. ՌԱՄԻԿ ԵՎ ՇԻՆԱԿԱՆ

Գյուղացիության դիրքը նախարարական կազմի մեջ որոշելու համար անհրաժեշտ է պարզել նախապես երկու կարևոր տերմին, ռամիկ և շինական: Կարևոր է մանավանդ սրանց փոխադարձ հարաբերությունը որոշել:

Պարոն Մանանդյանը կարծում է, որ ռամիկ և շինական նույնանիշ չեն և, որ առաջինն ավելի լայն հասկացություն է և բովանդակում է իր մեջ ո՛չ միայն շինականը, այլև քաղաքացին կամ քաղաքի ազգաբնակչության մի մասը: Եվ պետք է տեսնում մատենագրական աղբյուրներին դիմել իր կարծիքը հաստատելու համար: Ոչ միայն Բուզանդը և Փարպեցին են վկայության կոչում, այլ անգամ X դարում ապրող Հովհաննես Կաթողիկոսը:

Ինչ վերաբերում է բառի ստուգաբանությանը, նա հարում է Հյուբշմանի կարծիքին, որ ռամիկ նույնն է, ինչ որ «երամ, երամակ»: Կոչ է անում նաև ոսկեդարյան թարգմանությանց և ուզում է հավատացնել, որ ռամիկ այնտեղ համապատասխանում է իբրև թե հույն *δῆμος, δημότης* բառերին, որ նշանակում են ամբոխ, խառնիճաղանճ բազմություն:

Դժվար թե կարիք կա նկատելու, որ Հյուբշմանի ստուգաբանությունը և նրա վրա հիմնված դատողությունները ոչինչ չեն ավելացնում այն նշանակության, որ հետագայում ստացել է ռամիկ բառը:

Հույն *δῆμος* խուժան չէ, ինչպես և հայ ռամիկը: Ս. Գիրքը գործ է ածում **ամբոխ** համաձայն հույն *ὄχλος* կամ *θόρυβος* և խառնիճաղանճ՝ կամ խառնաճաղանճ՝ յույն *σύμμικτος*: Ռամիկ պատահում է ոչ հաճախ և միշտ ունի իր դեմ հույն բնագրում տարբեր բառեր՝ *ἔθνος*, *ὄχλος*, *θόρυβος*, որ նշանակում են «ժողովուրդ»: Մի անգամ ռամիկ համապատասխանում է հույն *ἐλάχιστος*, որ է «նվաստ»: Արժանի է ուշադրության, որ հակադրվում է իշխանի կամ թագավորի և կամ հեծյալ ուժերի: «Դատաստան անաչառ իշխանաց լինի, ռամիկն ներելի ողորմութեամբ» (Իմ., Զ, 7): «Եւ հեծելազօրքն վառեալք երկոտասան հազար, թող զայլ ռամիկն ամենայն» (**Յուդ**, Է, 2), երկրորդ անգամ (Յուդ, Է, 10): «Արար կոչունս սիրելեաց իւրոց եւ մեծամեծաց... եւ ամենայն իշխանաց նախարարացն», և «դարձեալ միւս անգամ ետ կոչել ի հարսանիսն զռամիկ քաղաքակիցս իւր» (Եսք, Ա, 3-5):

Շինական բառը միայն մի անգամ է պատահում Ս. Գրքում և այն՝ **շինականագոյն** խորք ձևով, որի դեմ հույն բնագիրն ունի *ἀγροικότερος* (Բ. Մակ., ԺԴ, 30), որ է գեղավարի, գռեհիկ: Թվում է, թե շինականն ոչնչով

բարձր չէ ռամիկից: Վահան Մամիկոնյանը Վաղարշ թագավորի առաջ խոսելիս իր հակառակորդների հասցեին ասում է, որ նրանք այնպիսի ստոր մարդիկ են, որ «կրտսեր շինականք աշխարհին Հայոց հաց գարշէին ուտել»: Կրտսեր շինական արհամարհական շեշտ ունի, հավասար գռեհիկի: Պատմիչների գործածությունից մի բան է հետևում միայն, որ ռամիկ և շինական նա է, որ ազնվական չէ, իսկ ինչ տարբերություն կա երկուսի մեջ, այդ մասին և ոչ մի ակնարկ: Բուզանդ և Եղիշե ավելի սիրում են գործածել շինական, քան ռամիկ, մինչդեռ Փարպեցու մոտ հակառակն է տեսնվում: Ծաղագոմի գյուղերում թաքնված ժողովուրդը, որի վրա հարձակվեց Հազարավուխտը Վահանին հետապնդելիս, Փարպեցին կոչում է ռամիկ: Դվին քաղաքում ևս նախարարների և ազատների կից նա գիտե ռամիկներ: Այն, ինչ Խորենացին պատվիրում է գեղջուկներին «պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս»:

Մատենագիրների լեզուն որոշ չէ: Եթե նրանց շփոթ գործածությունից հանենք այն եզրակացությունը, որ ռամիկը գյուղացին է և երբեմն քաղաքի ստորին խավերը, ինչպես խորհում է պ. Մանանդյանը, մեծ գանձ ձեռք բերած չենք լինի: Հեռուն գնալ և ռամիկը բանավոր կենդանիների երամակ համարել, նշանակում է առաջուց ուրանալ բառի տերմինիկ բնավորությունը:

Ամեն պարագային ռամիկ այն է, որ ազատ դասին չէ պատկանում, այս կետում համերաշխ են մատենագիրները: Այս հանգամանքն է, որ թելադրել էր մեզ լծորդել ռամիկը Արամե ազգագրական անվան: Ավելի Իրանի, քան հայերի կողմից պարտված ու խոնարհեցրած Արամե ժողովրդի անունը, կարծում էինք, կարող էր ընդհանրանալ պարթև **Արամիկ** ձևի տակ և դառնալ նշանակ հլու, խաղաղ ազգաբնակության: Բնավ չենք համառում այս մեկնության վրա[1]:

Խնդրի լուծումը կախված է պահլավերենից, ուր դեռ հուսալի է, որ մի օր կհայտնվի ռամիկ բառը այնպիսի ձևով, որ վերջ կտա վարանումներին[2]:

---

[1] Միևնույն միտքը պաշտպանած կլինենք, եթե համեմատենք պարսիկ **aram** կամ **ram** բառի հետ, որ նշանակում է «խաղաղ, հնազանդ, հլու», և արմատակից է հույն *ἠρέμα*, որ նույն իմաստն ունի: Զենդերենում ծանոթ է **rama** բառը կոպտության նշանակությամբ:

Հայերեն գռեհիկ ածանցված է գռեհ բառից, որ է «փողոց»: Վրաց լեզվում նույն բառերը հնչում են **գլեխի** «գյուղացի» և **գլախա** կամ **գլախակի** «խեղճ, ողորմելի»: Նույն մտայնությամբ լատին **rusticus** ծագում է **rus** բառից, որի համաձևն է գերմանական **Raum:** Եթե ենթադրենք, որ նույն արմատը, որ ծանոթ է իրանական լեզուներին, հայտնի է եղել նաև գերման ածանցով, կստանանք **rama** - «գյուղ», որից **rama** - **yaka, ramik** «գեղջուկ»:

Ահա մի կարգ հնարավորություններ, ավելի ընդունելի, քան **հրամ**, որպես աղբյուր ռամիկի:

[2] Սողդիական լեզվի մեջ երևան եկավ rmknik = ramakanik բառը *ἐθνικός* նշանակությամբ,

Ամեն պարզագույն ռամիկ այնպիսի անգույն հասարակ բառ չենք համարում, ինչպես Հայկազյան բառգիրքը և նրա հետևությամբ Հյուբշմանը: Պարոն Մանանդյանը ևս վտարում է ռամիկը նախարարական իրավակարգի տերմինների շարքից, և կենտրոնացնում իր ուշադրությունը շինական բառի վրա, որն այսպիսով մնում է միակ արտահայտիչը գյուղացիության որպես դասակարգի:

Շինականը նա է, որ ազատ չէ, և ազատը՝ նա, որ հարկատու չէ: Այսպես բնորոշելով շինականի և ազատի տարբերությունը, պ. Մանանդյանը կարծում է, որ շինականների հարկատվության համար հատուկ տերմին է եղել, որ է «ի հարկի ծառայութեան»:

Որ շինականները հարկ էին վճարում, այդ գաղտնիք չէ: Բայց որ «ի հարկի ծառայության հատուկ և առանձին տերմին» է, այդ կասկածելի է: Փավստոսը պատմում է Մուշեղ Մամիկոնյանի զինվորական սխրագործությունները, վերագրելով նրան մի շարք երկրների նվաճում: Մուշեղը հարձակվում է, հաղթում և երկիրը կամ բնակիչները «ի հարկի ծառայութեան կացուցանէր»:

Խոսքն այս դարձվածքի մասին է, որը մինչև այժմ որպես թե բավարար կերպով մեկնված չէ: Անձնական մեկնությունս, որ այս դարձվածը չէ նշանակում հարկ դնել, այլ հնազանդեցնել, ծառայության բերել, պ. Մանանդյանը համարում է «միանգամայն անհաջող»:

Զգալով, որ հիշյալ դարձվածքը կարող է սխալ ըմբռնվել և կարծել տալ, թե «ի հարկի կացուցանել» նշանակում է հարկ դնել, մենք մեր գրքի մեջ զգուշորեն ցույց ենք տվել անգամ այն աղբյուրը, որտեղից առել է Փավստոսը այդ դարձվածքը, ցույց ենք տվել, որպեսզի թյուրիմացության առաջն առնենք: Բայց մեր ջանքը իզուր է անցել, գոնե պ. Մանանդյանի համար:

Պետք է ասել, որ Մուշեղին վերագրված նվաճումները անարժեք բնավին են պատմական տեսակետից: Հովիանոս կայսրը 363 թվին կնքեց պարսից Շապուհ թագավորի հետ ամոթալի կոչված դաշինքը, լքելով իր դաշնակից Արշակ թագավորին, որ ընկավ Շապուհի ձեռքը և զոհ գնաց կայսեր դավաճան բարեկամության: Անմիջական հետևանքն եղավ Հայաստանի ծայրագավառների անջատումը, որ մի առ մի թվում է պատմագիրը: Արդ ճիշտ այս գավառներն են, որոնց վերստին նվաճումը վերագրվում է Մուշեղ Մամիկոնյանին: Սա չի համապատասխանում պատմական իրականությանը: Ամոթապարտ դաշինքն սկիզբն եղավ Արշակունյաց պետության քայքայման, որ քիչ հետո բաժանվեց երկու ոխերիմ թշնամիների մեջ:

---

որ **ռամիկ** -ի ուրիշ ձևն է **ռամական**, բայց չի լուծում ստուգաբանական կնճիռը՝ **E. Benveniste**, Essai de Grammaire Sogdienne, p. 95. (ed. 1929).

Մուշեղին նվիրված այդ էջերը Փավստոսի ճարտասանության արդյունք են և գովք Մամիկոնյան հերոսին: Մակաբայեցվոց գիրքն է, որ աղբյուր է ծառայել մեր պատմագրի ոգևորության: Ոճը և բառերը մատնում են նրան: Հուդա Մակաբայեցին «հարկանէր», «ի գերութիւն վարէր զկանայս», պատանդս առնէր, և «զմնացորդս» «ի հարկի ծառայութեան կացուցանէր»: Ավելի բան չէ գտնում Փավստոսը ասել Մուշեղի մասին, քան կրկնել այս բառերը գրեթե միևնույն ձևով ամբողջ 12 գլուխներում, ուր իր հերոսի պատերազմական շահատակությունններն է նկարագրում: Որ Փավստոսը գտնվում է Մակաբայեցվոց ազդեցության տակ, ինքը ևս չի թաքցնում և մի ուրիշ առթիվ հիշում է նրանց «ի նմանութիւն Յուդայ եւ Մաղաթեայ Մակաբէի անկան ի ճակատ պատերազմի»[1]:

Ամբողջ Ս. Գրքի մեջ մի անգամ է միայն պատահում «ի հարկի ծառայութեան կացուցանել» ոճը և այդ՝ Բ. Մակաբայեցվոց 8-րդ գլխում, որտեղից քաղում է Փավստոս և մյուս հիշածս բառամթերքը:

Որպեսզի խելահաս լինենք բուն իմաստին, մի միջոց կա և դրական միջոց, դիմել հույն բնագրին: Արդ հայ դարձվածքի դեմ հույնը ունի *καταδουλώσαντο*, այսինքն՝ ծառայեցուցին[2]:

Ասել է, թե խոսքը հարկատվության մասին չէ, այլ հնազանդության, ծառայության բերելու:

Եթե պ. Մանանդյանը փոխանակ Նորայրի հեղինակությանը (4) ապավինելու, բանար հույն բնագիրը, կարծում եմ, ձեռնպահ կմնար, մեր մեկնությունը անհաջող համարելու արտորանքից: Հարկ հայերեն չի նշանակում միայն «տուրք», այլև ավելի լայն իմաստով, «հարկադրանք»: «Ի հարկի ծառայութեան կացուցանել» նշանակում է «պարտավորացնել, հարկել ծառայելու», «ի հարկի ծառայութեան կալ», պարտավորվիլ ծառայելու:

Նույն դարձվածը առանց ծառայության, այլ լոկ «ի հարկի կացուցանել», «ի հարկի կալ», կամ «հարկիլ» ևս միևնույն նշանակությունն ունի, որ է ծառայել: «Ոչ եւս կայցեն նոքա ի հարկի օտարաց», կամ «թէ ոչ հարկեցէք արքային» հույնն ունի միշտ *ἐργῶνται, ἐργάζεσθαι*[3]:

Երբեմն **հարկ** թարգմանված է հույն *φόρος*, որ նշանակում է «տուրք, հարկ»: Ս. Գրքի մասնագետները, սակայն վկայում են, որ հույն բառը Յոթանասնից թարգմանության մեջ գործ է ածվում առավելապես ծանր աշխատանքի, բեկարի մտքով, համաձայն եբրայերենի **mas** բառին, մերթ փոխարինվելով *ἔργον* «գործ, աշխատանք» բառով[4]:

---

[1] **Փավստոս Բուզանդ**, Գ,11:

[2] **Ա. Մակաբ.**, Ը, 10:

[3] **Երեմիա**, Լ, 8 և Իէ, 9:

[4] **Vigourout**, Dictionnaire de la Bible, II, 1030.

Հայերեն **հարկ** իր կրկնակի իմաստով լիովին ծածկում է նույն բառը: Նշանակալից է՝ «կացոյց զնա ի վերայ հարկաց բեռնակրաց», ուր հարկը է բեկար, **corvée:** «Արկ արքայ Սողոմոն մարդահարկ յամենայն Իսրայէլ, եւ էր հարկն երեսուն հազար արանց»: Մարդահարկ նշանակում է բեկարի ենթակա մարդ: Նույն միտքն ունի և հարկատուք բառը, որ կարդացվում է Մնացորդաց գրքի համապատասխան տեղում, «ած Սողոմոն ի հարկատուս»[1]:

Ս. Գրքի հետևությամբ Ղևոնդ պատմագիրն ասում է Եզիտի մասին. «հասանէր ի քաղաքն Կարնոյ եւ արկանէր **մարդահարկ** ի վերայ աշխարհին եւ հաւաքեալ զբազմութիւն անթիւ կացուցանէր գործավարս ի վերայ գործոյն եւ փոյթ յանձին կալեալ շինէր զխրամատեալ պարիսպ քաղաքին»: «Արկ Սողոմոն ընդ հարկօք ծառայութեան»[2] դարձյալ վերաբերում է ծանր աշխատանքի: Այսպիսով, ոչ «ի հարկի» և ոչ «ընդ հարկօք ծառայութեան» դարձվածները չունին այն իմաստը, որ տրամադիր է տալ պ. Մանանդյանը: Փարպեցու մի վկայությունը ևս չէ հաստատում իր տեսությունը: Պարսից թագավորը հրամայում է Աբրահամ և Խորեն երեցներին երթալ Ասորեստան, որ այնտեղ «մշակութիւն արասցեն ընդ արքունի մշակսն եւ **ի հարկի կայցեն** մինչեւ ցվախճանս իւրեանց»: Թագավորի պատվերը կատարվում է և երկու երեցների ականջները կտրում են և ղրկում Ասորեստան «կալ անդ նոցա ի հարկի եւ առնել մշակութիւն»: Խորենը մեռնում է աքսորում, իսկ Աբրահամը՝ տեղացի քրիստոնյաների երաշխավորությամբ, «որք զտուսն իւրեանց եւ զարարս փոխանակ ընդ հարկի նորա գրեցին յարքունիս ցվախճան նորա, եւ կատարեցին զկարգեալսն անվեհեր յաղագս նորա», արձակվում է և գալիս Հայաստան:

Պարոն Մանանդյանի ըմբռնումով **ի հարկի կալ** նշանակում է հարկ տալ: Ասել է, թե հայ աքսորական քահանաները ոչ միայն արքունի մշակություն պիտի անեին, այլև պարտավոր էին հարկ տալ և սահ այդ հարկատվությունից նրանց ազատելու համար Ասորեստանի հավատացյալները գրավ են դնում կամ երաշխիք առաջարկում իրենց գույքը:

Սակայն հնարավո՞ր է արդյոք, որ տաժանակիր աշխատանքի դատապարտված աքսորականները դեռ հարկ էլ տան և ինչ միջոցներից: Փարպեցին ավելի զգաստ է, քան խորհում է պ. Մանանդյան: Նա պատմում է, որ աքսորյալ խեղճ երեցները ապրուստի միջոց չունեին և նրանց պիտույքները հոգում էին տեղացի քրիստոնյաները հոժարակամ ընծայաբերությամբ: Ուրեմն ո՞րտեղից պիտի վճարեին այդ թշվառականները պետական հարկ, և ինչո՞ւ պիտի վճարեին, քանի որ հոգևորական լինելով չէին պատկանում հարկատու դասին:

---

[1] **Գ. Թագաւորութեանց,** ԺԱ, 28 և Ե, 13= **Բ Մնացորդաց**, Ը, 8:

[2] Նույնը, Թ, 21:

Պարզ է, որ խոսքը հարկի մասին չէ և չէ կարող լինել: «Ի հարկի կալ», տեսանք, որ Ս. Գրքում նշանակում է ծառայել, մարմնավոր աշխատանք կատարել, կամ ինչպես պատմագիրն է ասում, «առնել մշակութիւն արքունի»: Այս է իսկական իմաստը «ի հարկի կացութեան»: Եղիշեն նույն պատմությունն անելիս ասում է պարզորեն, «կտրեաց զնոցա ունչս և ականջս և ետ տանել յԱսորեստան զի կայցեն **ի մշակութեան արքունի**»: Դարձյալ կրկնում է դահճապետի բերանով. «եղեւ հրաման պատուհասիդ ձերոյ եւ ի վերայ դորին պատուհասի՝ երթալ ձեզ յԱսորեստան եւ լինել ձեզ **մշակ** յարքունիս»: Մի ուրիշ անգամ Եղիշեն նրանց պատիժը կոչում է «արքունի պատուհաս»:

Արտաքին աղբյուրներից հայտնի է, թե ինչ էր արքունի մշակությունը: Այն, ինչ որ այժմ կոչվում է հասարակաց կամ հանրօգուտ աշխատանքներ, իսկ մեր ժողովուրդն կոչում է թագավորական բեկար: Ճանապարհներ շինել և պահպանել, ջրանցքներ բանալ և մաքրել, հեղեղների դեմ ամբարտակներ կանգնել, ուղևորների համար օթևաններ, կարվանսարաներ կառուցանել, կամուրջներ ձգել, աշխատել պետական և արքունի շենքերի վրա, գուցե և արքունի կալվածներում, նաև հանքեր մշակել, ահա մի շարք աշխատանքներ, որ կատարվում էին արքունի կոչված մշակների ձեռքով: Նրանք իրենց պետերն ունեին, գործի ղեկավարները, որ կոչվում էին կարիգպետ, ավելի հին ձևը լինելու է կարիկպետ: Ճիշտ այն գործավարներն են մարդահարկերի վրա նշանակված, որ հիշում է Ղևոնդ պատմագիրը իր վերև հիշածս խոսքերում:

Ահա այն մշակները, որոնց հետ պիտի լծվեին մարմնավոր տաժանքի նաև մեր երեցները: Պատմագիրը հավատացնում է, որ տեղացի քրիստոնյաներն իրենց երաշխավորությամբ ազատ կացուցին Աբրահամին ծանր պատուհասից:

Պարոն Մանանդյանը կարծում է, որ «համերաշխիքը այն հարկերի համար էր, որ նրանից ստացվելու էր մինչև նրա վախճանը»: Փարպեցին ուրիշ բան է ասում: Երաշխավորության գլխավոր կետը զանց է անում պ. Մանանդյանը, որ է «եւ կատարեցին զկարգեալսն անվեհեր յաղագս նորա»: Քրիստոնյաները, ուրեմն, հանձն են առնում կատարել զկարգեալսն, այսինքն՝ զհրամայեալս ի թագաւորէն, ինչպես ասում է պատմագիրը սկզբում, այսինքն՝ այն հարկը, մշակությունը, որ ծանրանում է աքսորականի վրա: Որպես ապահովություն հանձնառության նրանք գրավ են դնում իրենց գույքը հարքունիս:

Ավելորդ չէ նկատել, որ Եղիշեն չի հիշում երաշխավորության հանգամանքը, այլ ասում է, որ Աբրահամը 12 տարի Ասորեստան մնալուց հետո դարձավ հայրենիք: Փարպեցին, ինչպես և Եղիշեն պատմում են, որ

Աբրահամն աքսորի ժամանակ երբեմն գնում էր Այար աշխարհը կապյալ նախարարների տեսության, տանելով հետը նյութական նպաստ այն տուրքերից, որ տալիս էին նրան Ասորեստանի քրիստոնյաները: Երբևեկի այս ազատությունը ցույց է տալիս, որ աքսորական երեցը շնորհի էր արժանացել քրիստոնյաների երաշխավորությամբ թերևս սկզբից: Բայց ինչո՞ւ չէր վերադառնում Հայաստան, եթե ազատ էր արձակված: Թվում է, որ Այար աշխարհ այցելելը և երաշխավորության խնդիրը պատմական իրողություն չեն: Սոսկ գովասանք, նրա անձնական առաքինությունը դրվատելու միջոց: Աբրահամի արձակումը կապ ունի գերյալ նախարարների դարձի հետ և երկուսն էլ հետևանք են ընդհանուր ներումի, որ տեղի ունեցավ Պերոզ թագավորի օրով:

Կասկածս, սակայն խնդրին չէ վերաբերում: Փարպեցու վկայությունը ամեն դեպքում պահում է իր արժեքը որպես հնարավոր կենցաղական երևույթ: Վիճելի ոճերը, «ի հարկի կացուցանել կամ կալ, ընդ հարկօք կացուցանել կամ կալ», չեն նշանակում հարկատու անել կամ լինել և ուրեմն խոսք չի կարող լինել և այն մասին, որ նրանք «հատուկ տերմիններ են»: Դրանց իմաստն է արկանել ի ծառայություն և կալ ի ծառայություն: Հարկ հարկանել, «արկանել ընդ հարկաւ, դնել ընդ հարկաւ», դնել հարկ, տալ հարկ, սրանք են հարկ նշանակող դարձվածները:

## 5. ԾԱՌԱՅՈՒԹՅՈՒՆ, ՍՏՐԿՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՃՈՐՏՈՒԹՅՈՒՆ

Մի կողմ թողած լեզվական խնդիրը, ոչ ոք կարե ժխտել, որ գյուղացին հարկ էր տալիս և կամ նա կարող էր ծառա կոչվել իր տիրոջ նկատմամբ, որպես իշխանը ծառա է թագավորի հանդեպ: Այլ բան է, եթե ծառա, իրոք, տեքնիկ բառ լիներ նախարարական իրավակարգում համազոր **servus**: Այս ավելի արժեք կ'ունենար, քան այն մատենագրական ցուցումները, որ բերում է պ. Մանանդյանը ապացուցանելու հայ գյուղացիության ճորտանման վիճակը: Տեսական արգելք չկա: Ֆեոդալականությունը բերում է իր ետևից servage որպես բնական ստվեր: Հայ նախարարական կարգը ևս ունենալու էր համապատասխան ստվերը, մի ենթադրություն, որ պետք ունի հաստատության, բայց որի համար պատմությունը զլանում է փաստեր տալ:

Ինչ ինչ վկայություններ, որ բերել եմ գրքումս որպես նպաստ սեպուհական իրավունքի լուսաբանության, պ. Մանանդյանն ուզում է օգտագործել ուրիշ նպատակով: Դվինի ժողովը 641 թ. տրտունջ է հայտնում, թե «յորժամ ազատք զիւրեանց զերդ և զմարդ բաժանեն, յոլովք չարակնութեամբ առնեն, զժառանգաւորս եկեղեցւոյ ջանան **ի ծառայութիւն և ի ստրկութիւն արկանել**»: Եղիշեն պատմում է, որ Աղվանից թագավորը

«հանեցաւ զսեպհական առնուլ բաժին իւր, զոր ի հօրէն առեալ էր հազար երդ»: Այս վկայությունը պ. Մանանդյան վերագրում է Մովսես Կաղանկատվացուն, մինչդեռ աղբյուրը Եղիշեն է, որտեղից քաղում է Կաղանկատվացին: «Երդերի և մարդկանց» բաժանումը, նրա կարծիքով ակնարկ է, որ գյուղացիները համարվում էին ազատների «հատուկ գույքը» և ուրեմն գտնվում էին ճորտանման վիճակում:

Այս ևս ճիշտ չէ: Երդ ու մարդ նույնն է, ինչ որ երդ, տուն: Ինչպես որ բաժանում էին գյուղեր, ագարակներ, կարող էին բաժանվել և գյուղի տները, երդերը: Բաժանումը ոչինչ չի ասում անձնական կապի մասին, որը միայն կարող է բնորոշել ճորտանման վիճակը: Ինչ վերաբերում է ազատների չարակնության, որով եկեղեցու ժառանգավորներին աշխատում էին ծառայության և ստրկության մեջ ձգել, պետք ունի տակավին ստուգության: Եկեղեցու ազատության մասին ճառերը հաճախ չափազանցություններ են, որ պետք է ընդունել զգուշությամբ: Եղիշեն ևս գանգատվում է, որ Հազկերտը «ազատութիւն եկեղեցւոյն արկանէր ի ծառայութիւն» և «միայնակեաց քրիստոնեայք որ բնակեալ էին ի վանորայս, ընդ աշխարհագրաւ էարկ»: Նույն հեղինակը **Միանձանց** ճառի մեջ ասում է. «ազատ եկեղեցի անկաւ ի ծառայութիւն հեթանոսաց եւ սուրբ **քահանայք** նորա կոփին՝ **չարչարին յանօրէն հարկահանաց**»:

Սակայն, Բյուզանդիայում անգամ բարեպաշտ կայսրերի հովանավորության տակ, եկեղեցին բացարձակ ազատություն չէր վայելում: Եկեղեցին իր հողերի համար հարկ էր վճարում: Հարկ էին վճարում նաև մենակյացները, որի դեմ բողոքում է Բարսեղ Կեսարացին, համարելով անարդար[1]: Այլև 409 թվին հրատարակված մի օրենք, որ մտել է Հուստինիանոսի Օրինագրքի մեջ, ասում է, որ գյուղացին քահանա ձեռնադրվել կարող է միայն այն պայմանով, որ շարունակե վճարել իր հարկը կամ գտնե մի փոխանորդ, որ մշակե հողը նրա տեղ: Այս բանի համար պատասխանատու էր նրա տերը[2]:

Եթե աստվածապաշտ Թեոդոսիոս կայսրը, որի հիշատակը տոնում է եկեղեցին, կարող էր այսպիսի հրահանգ տալ, ավելի բան չէ կարելի սպասել չարագործ Հազկերտից: Հարկավ, կայսերական օրենքը խստությամբ չէր գործադրվում: Ինչպես ամեն օրենք, նա ևս գիտեր բացառություններ: Կային առանձնապես արտոնված կղերականներ, որոնք կամ թեթև հարկ էին վճարում, կամ իսպառ ազատ էին արձակված:

---

[1] **Migne, P G,** 32, col. 1019. **A. Piganiol,** L'impôt de capitation sous le Bas-Empire, p. 60.

[2] C. J. I. 3, 16. **A. Piganiol,** p. 61.

Եթե Թեոդոսիոսի օրենքի տրամադրությամբ մոտենանք այն երևույթին, որ դատապարտում է Դվինի ժողովը, թերևս գտնենք, որ ազատների «չարակնությունը» որոշ իրավական հիմ ուներ: Արդարև, ահա իշխանական գյուղացին քահանա է ձեռնադրվում և հրաժարվում է իրեն հասանելիք հարկը վճարել այն հիմամբ, որ կան հին քահանայական տներ, ազատ հարկատվությունից: Իշխանը իրավունք ուներ ժխտել քահանայի հավակնությունը և նրանից սովորական հարկը պահանջել: Հարկատու վիճակը ծառայական է անշուշտ և՛ Դվինի ժողովականները կարող էին ասել «արկանել ի ծառայութիւն», բայց ոչ «ի ստրկութիւն»: Իշխանական գյուղացին ամենավատթար դեպքում **servus** է և ոչ **sclavus**, որոնք տարբեր հասկացողություններ են: Ստրկություն բառը ժողովականների բերանում այլ բան չէ, եթե ոչ հակառակորդի անկշիռ չափազանցություն: Ամեն պարագային եկեղեցու ազատությունը կարոտ է ստուգման ավելի անաչառ աղբյուրների հիմամբ, քան են եկեղեցականների վկայությունները:

Կասկածելի է նաև պ. Մանանդյանի դիտողությունը Ղազար Փարպեցու մասին նույն ճորտության խնդրի առթիվ: Վահան Մամիկոնյանին գրած Թղթի մեջ Փարպեցին ասում է, որ ինքը հասարակ ոմն չէ և ոչ էլ «ծառայ ուրուք, քանզի պարեգօտաւորք ազատեալ են ի Քրիստոս. իսկ որ զատոյցն զիս պարեգօտիւք ի ծառայութենէ աշխարհիս եւ ազատութեան եղեւ մեզ առիթ, տէր Աղան, քո տեառն քեռի էր»:

Պարոն Մանանդյան ուզում է հասկանալ «ազատութիւնն» աշխարհային իմաստով, այսինքն՝ Փարպեցին գյուղացի տղա էր հարկատու, և Աղան Արծրունու շնորհիվ ազատվում է հարկատվությունից, անցնելով կրոնավորների դասը: Սակայն, այս բացատրությունը չի պարզում, թե Աղան ի՞նչ իրավունքով պիտի Ղազարին հաներ հարկատու վիճակից: Փարպի գյուղը Արծրունիների սեփականություն չէր, որ Աղան Արծրունին գործեր որպես տեր հանդեպ իր **ծառայի:** Նա սովորական մենակյաց էր, որ տակավին «ի տիս տղայութեան» քաշվել էր աշխարհի անցավոր վայելքներից «յանապատ» և ճգնողական խստամբեր կյանք էր վարում, գիշեր ցերեկ անդադար աղոթելով: Եկեղեցական վարչության մեջ դեր չուներ և ոչ էլ հարկավոր աստիճանը, որ կարծել տար թե նրա միջնորդությունը Ղազարի համար եկեղեցու անունով էր:

Մութ է մնում դարձյալ թե ի՛նչ գործ ունի Ղազարը Մամիկոնյան ընտանիքում, ուր տեսնում ենք նրան մանուկ հասակից, «սննդակից եւ խաղակից» Մամիկոնյան որեարների՝ Վահանի, Վասակի, Արտաշեսի և Վարդի: Ինչո՞ւ պետք է Չվիկ և Անուշվռամ, Արծրունի քույրեր, մեկը Մամիկոնյան, մյուսը՝ մեծ բդեշխի տիկին այնքան մայրական խնամք տածեին մի գեղջուկ տղայի:

Նոր մեկնությունը նոր դժվարություններ է հարուցանում: Հավանականն այն է, որ խոսքը աշխարհային ազատության մասին չէ, այլ հոգևոր: Կրոնավորի ուրեմն և Ղազարի աչքում, բոլոր աշխարհականները ծառա են, ազատ, թե գեղջուկ: Իսկական ազատը նա է, որ «ազատեալ է ի Քրիստոս», փրկված է «ի ծառայութենէ աշխարհիս»: Այդ ազատությունն երաշխավորում է պարեգոտը, հոգևոր կոչումը: Աղան, որի մոտ «սնեալ եւ ուսեալ է» Ղազարը, տալով նրան և պարեգոտ, դառնում է «ազատութեան առիթ»: Այսպիսով թեթևացրած կլինի Ղազարի վիճակը: Աշխարհից փրկելը ավելի դյուրին է, քան «ճորտությունից»:

Դժվար թե կարելի է ողջունել Խորենացու «փախչողք ի ժառանգութենէ» խոսքի նորալուր մեկնությունը: Ժառանգություն իբրև թե շինականների հողաբաժինն է այնպիսի ծանր պայմանների ներքո, որ նրանք չէին ուզում մշակել և գերադասում էին փախչելով ազատվել աշխատանքից: Նախ մեր Պատմահայրը շինականների մասին չէ խոսում, այլ ժողովրդականների, որոնց անվանում է «վէսք, ստահակք, մեծախօսք, անվաստակք, արբեցողք, վնասակարք»: Եթե ոչ վերջին երեք ածականները, գոնե առաջին երեքը ոչ մի կերպ չեն հարմարում ճնշված ճորտերին: Խորենացու Ողբը որպես մի քերթված վատ աղբյուր է պատմության, եթե է: Վարդապետներին, կրոնավորներին, վիճակավորներին, աշակերտներին, ժողովականներին, զորականներին, իշխաններին և դատավորներին վերագրած Աղամա յոթ մեղքերը նույնչափ ստույգ են որքան «տարերց փոփոխել զբնութիւնս իւրեանց»: Եթե մի բան կա, որ վերաբերում է հայ կյանքին այդ է «յօտարութիւն վտարումն ազատաց եւ անթիւ նեղութիւնք **ռամկաց**»:

Այս տողի հեղինակը չի կարող ամբաստանել, որ ռամիկը փախչում է իր հողից: Ավելի բնական է ըմբռնել ժառանգությունը սովորական իմաստով, այսինքն՝ որ «ժողովրդականք վէսք, ստահակք» փախչում էին հոգևոր կոչումից, չէին ուզում եկեղեցուն ծառայել:

Պարոն Մանանդյանի առարկությունը, թե եկեղեցականությունը արտոնյալ վիճակ է, ուստի անհեթեթ կլինի կարծել, որ նրանից խուսափում էր ժողովուրդը, անարժեք է: Արտոնության կից կա և ծանր պատասխանատվություն և պահանջ: Ահա Պապ և Աքանազինես թողնում են «հոգեւոր պատիւը», մերժելով «զանձինս իւրեանց **ի ժառանգութենէ** Աստուծոյ»: Ողբի իմաստն հենց այն է, որ մարդիկ այնքան փչացել են, որ հրաժարվում են անգամ հոգևոր բարձր կոչումից: Ճարտասանություն կամ դառնություն լցված սրտի:

Պարոն Մանանդյանի փաստերն այնքան փխրուն են, որ ոչինչ չեն ավելացնում այն լոկ տեսական թելադրության, թե հավանական է, որ Հայաստանում ևս ճորտանման վիճակ եղած լինի: Նա կարծում է, որ

ճորտությունը համատարած երևույթ չէ եղել, ոչ էլ ամեն տեղ միակերպ և նույնանման, այլ որ զանազան վայրեր ունեցել են իրենց առանձնահատկությունները: Պատրաստ է անգամ թույլ տալ, որ ճորտերի կից կարող էին լինել և ազատ գյուղացիության մնացորդներ: Առանձնահատկությունների գոյությունն ապացուցանելու համար վկայության է կոչվում Խորենացին: «Գիւղից և գաւառաց ևս և իւրաքանչիւր տանց **առանձնականութեանց,** և հանուրց հակառակութեանց և դաշանց այժմ առ մեզ գտանին անքաւ զրուցաց մատեանք, մանաւանդ որ ի սեպհական ազատութեան պայազատութիւն»[1]: Որոնելի առանձնահատկությունները պ. Մանանդյան գտնում է ընդգծած **առանձնականութեանց** մեջ:

Սակայն պ. Մանանդյան հաշիվ չէ տալիս իր մեկնության հետևանքի մասին: Հիրավի, գյուղեր, գավառներ և տներ ինչու պիտի վեճի բռնվեին իրենց առանձնահատկությունների առթիվ: Առանձնահատկություն ասածդ բնական խտրոց է, մի տեսակ **noli me tangere,** որ ընդհարման առիթ չունի: Պատմիչին երկու կերպ հասկանալ կարելի է: Կամ գյուղեր, գավառներ և մասնավոր տներ առանձին առանձին, մեկը մյուսի հետ և բոլորը միասին միմյանց դեմ հակառակություններ ունեին, և կամ ի նկատի ունենալով կոչումի վերջին մասը, պիտի կարծել, որ առանձնականությունք այն վեճերն են, որ ծագում են սեպուհական իրավունքի շուրջը ընտանիքից բաժանվել, **առանձնական** դառնալ, ցանկացողների միջև: Առանձնահատկությանց մասին այստեղ խոսք լինել չի կարող, որովհետև անիմաստ է:

Պետք է խոստովանել, որ պ. Մանանդյան ոչինչ չէ կորցնում, եթե անգամ հրաժարվի իր մեկնությունից: Առանձնահատկությունները դուրս է գալիս, որ «չեն բացասում ճորտանման վիճակը, որ միևնույն բնություն պիտի ունենար Հայաստանի բոլոր շրջաններում»: Ասել է, թե հայտարարված առանձնահատկություններն այլ բան չեն, քան նույն ճորտական արտի խոտեր:

Հոդվածագիրը բացատրում է վերջապես, թե ինչ է հասկանում ճորտություն ասելով: Նա գտնում է իրավամբ, որ «ճորտ, ճորտություն բառերը բավականին ճապաղ և խառնաշփոթ գաղափարներ են»: Փորձում է պարզել: Դուրս է գալիս, որ առանձին շփոթ չկա, որ երկու տեսակ ճորտ է եղել, համաձայն երկու տարբեր տնտեսության, որ մի գերման գիտնական և նրա հետևությամբ մի ռուս (5) անվանում են Grund և Gutsherrschaft: Լսում ենք նաև, որ Հայաստանում առաջին տեսակի տնտեսությունը պիտի եղած լինի, այսինքն՝ որ նախարարները սեփական տնտեսություն չունեին, այլ ապրում էին ստացած հարկերով: Հետևում է ապացույց, քաղած Բուզանդից, դժբախտաբար անհաջող: Ներսեսը պատվիրում է թագավորին, մեծամեծներին և «ամենեցուն որ ոք ի վերայ ընկերին ունիցին

---

[1] **Մովսես Խորենացի**, Գիրք Ա, 3, էջ 7:

իշխանութիւն, զուք ունելով ընդ իւրեանց **ծառայս** եւ ընդ **կրտսերս** եւ ընդ **աշակերտս**, սիրել իբրեւ զընտանիս եւ մի՛ անարժանս եւ աւելի տարապայմանս **հարկօք** նեղել քան զչափն, յուշ առնելով զի եւ նոցա տէր գոյ յերկինս»:

Կարծում ենք, որ այստեղ խոսքը հարկերի մասին չէ բնավ և ոչ էլ նախարարների: Պատվերն ուղղված է բոլոր նրանց, ով ստորադրյալ ունի առհասարակ, ինչպես տերը, որ ծառա ունի, մեծը, որ կրտսեր ունի, ուսուցիչը, որ աշակերտ ունի: Սրանց սաստվում է, որ ավելորդ նեղություն չտան, ավելորդ բռնություն չգործադրեն և մեղմ վարվեն փոքրավորների հետ: Հարկը այստեղ տուրքի իմաստ չունի:

Հարկավ անհաջող ապացույցը դեռ ապացույց չէ հակառակ դրության, որ նախարարները հարկ չէին ստանում, ինչպես և հարկ ստանալը ինքնին դեռ չի նշանակում, որ սեփական տնտեսություն չունեին: Երկու տեսակ տնտեսությունն իրար բացասող երևույթներ չեն, այլ կարող են կենակցել բարի հարևանությամբ:

Գերման գիտնականից պ. Մանանդյան լսում է, որ իսկական ճորտության աղբյուրը հենց սեփական խոշոր տնտեսությունն է, ուստի նրան հաճելի է, որ մեր նախարարները միմիայն հարկատու գյուղեր ունենան և ոչ սեփական տնտեսություն, որպեսզի կարելի լինի հանգել մխիթարական եզրակացության, որ «Հին Հայաստանի շինականներին պետք չէ համարել իրավազուրկ կամ ճորտ այդ բառի լրիվ իմաստով»: Իրավական մեղմ դրության պատճառն այն է, նրա կարծիքով, որ «խոշոր առևտուրը և առևտրական կապիտալը Հայաստանում չէին կատարում առանձին մեծ դեր գյուղատնտեսության նկատմամբ»:

Օտարոտի միտք: Որքան հայտնի է, առևտուրը և իր կապիտալը ջրկիրներ չեն ֆեոդալական ծառի համար: Ընդհակառակը նրանց բացակայությամբ է, որ հողը և կալվածատիրությունը ստանում է կապիտալի ուժ և նշանակություն:

Կամենալով մոտեն որոշել շինական դասի վիճակը, պ. Մանանդյան դիմում է Կանոնագրքին, մասնավորապես Շահապիվանի ժողովի կարծեցյալ կանոններին և տեսնում է, որ շինականներն իրավունք են ունեցել զույք ունենալ և ամուսնանալ առանց կալվածատիրոջ հաճությունն առնելու: Այսպես խնդիրը բավականին պարզված համարելով, կնքում է իր հոդվածը լավատես հայտարարությամբ, որ շինականների գրությունը «այնքան էլ, մութ ու անորոշ չէ, ինչպես մինչև այժմ կարծվել է»:

## 6. ՂԵԿԱՎԱՐ ՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Բարեկամական ուշադրությամբ հետևելով քայլ առ քայլ Հ. Մանանդյանի հետազոտության, տարաբախտաբար, չեմ կարող հարել նրա հայտարարության: Չեմ տեսնում իրոք լուսաբեր շող, որ ընդհանուր տեսությունների վրայից անցնելով գար մտներ շինական երդիկից ներս և լուսավորեր նրա մթությունը: Մատենագրական նոր և փոքր ի շատե արժեքավոր նյութեր չկան սեղանի վրա: Կան հայտնի նյութերի օտարոտի մեկնություններ: Մատենագրական ցուցումները պահանջում են զգուշավոր վերաբերում: Նրանց արժեքը ներկացնելու համար բավական չէ սովորական համեմատությունը, հարկավոր է առաջնորդող լապտեր:

Հայ մատենագրությունը որքան և ծեր, ավելի մանուկ է, քան նախարարական կարգի հիմնական հյուսվածքը: Նրա վրա նստած է Արշակունի կնիք: Արևելքում ֆեոդալականությունը նույնքան հին է, որքան նրա պատմությունը: Բայց այն ֆեոդալ կարգը, որ տեսնում ենք Հայաստանում, գլխավորապես Արշակունի գործ է: Արշակունիների անկումից հետո բնական է, որ նրանց ստեղծած և հովանավորած իրավակարգը սկսվեր եղծվել, քայքայվել: Երբ հայ գիրը երևան եկավ, նախարարական շենքը արդեն փլված էր էապես: Չի կարելի ասել, որ անգամ անդրանիկ հայ պատմական գործերը փայլում են նախարարական նիստ ու կացի գիտությամբ: Լավագույն պատմիչը, Բուզանդ, կամ ժլատ է կամ շատ տեղյակ չէ: Արշակի շինարարության մասին խոսելիս պատեհ առիթ էր պարզելու այն կարգերը, որոնց վերականգնումը հատկացնում է Արշակին: Սակայն, ավելի բան չի գտնում ասելու քան այն, որ սպարապետությունը տրվում է Մամիկոնյաններին, հազարապետությունը Գնունի տան, որ շատ գործակալներ կային և որ բարձերի թիվը հասնում էր ինն հարյուրի:

Հայ անդրանիկ պատմական գործերում խրատական միտումները բավականին մթագնում են իրականությունը և ճոռոմաբան լեզուն հաճախ խեղդում է պարզ և շիտակ խոսքը: Պատմական կարևոր տերմինները կորցնում են իրենց անհատականությունը ճարտասանական խառնաշփոթի մեջ: Կանգնել նրանց երբեմնյան ուրույնությունը, որոշել նրանց տեղը հասարակական կազմի մեջ դժվար խնդիր է: Մատենագրական համեմատությունները բավարար միջոց չեն դրական արդյունքի հանգելու: Հարկավոր է ուրիշ օժանդակ մեթոդ, առաջնորդող տեսական հայացք:

Անշուշտ պ. Մանանդյան ունի տեսական հայացք, մշակված գերման գիտնական Կնապպի հետևողությամբ: Մեզ թվում է, որ վերջնի տեսությունը միակողմանի է: Պետք է հաշվի առնել նաև ֆրանսիական գիտունի՝ Պիգանիոլի տեսակետը, թե **servage**-ի ծագումը որոնել պետք է ոչ թե

տնտեսության եղանակի մեջ, այլ վերագրել մանավանդ հարկահանության հատուկ սիստեմի[1]:

Թերի է նաև պ. Մանանդյանի դիրքը շինականության խնդրում, քանի որ ելակետ ունի միայն հարկատվությունը և անտես է առնում միանգամայն հողային սեփականության սկզբունքը:

Կոստանդին Մեծի ժամանակից «հեռուն չգնանք» կայսերական օրենքը զանազանում էր երկու տեսակ հողային սեփականություն, **territoria** և **possessiones,** այն է **պետական** հող և **կալվածական**: Ըստ հողի զանազանվում էին և գյուղացիք:

Տերիտորիայի վրա ապրում էր ազատ գյուղացիությունը, որ կոչվում էր **plebeius**, իսկ կալվածական հողերի գյուղացին կոչվում էր **colonus**: Պլեբեյուս գյուղացին սեփականատեր էր իր հողամասի և վայելում էր սեփականության իրավունքները լիովին: Իր հողային սահմանյալ հարկը հատուցանում էր անմիջապես պետության: Կոլոնը, ընդհակառակը, տեր չէր իր հողի, սեփականության իրավունքը պատկանում էր կալվածատիրոջ, ինքը գյուղացին միայն **tenancier,** «կալող կամ հողակալ» էր, և հողամասի համար հարկ էր վճարում ոչ միայն պետության, այլև առանձին հողավարձ կամ կապալագին էր տալիս կալվածատիրոջ, որ կոչվում էր սովորաբար canon: Կալվածական հողերի սեփականատերերն էին նախ արքայական տունը, հետո եկեղեցին, և վերջապես մասնավոր անձինք:

Կոլոնները անկախ իրենց հողային տերերից բաժանվում էին երկու կարգի: Պարոն Մանանդյան կամ իր առաջնորդ գերման գիտնականը (6) կարծում է, որ բաժանումը բխում է տնտեսական երկու տարբեր սիստեմներից: Առաջինը իբրև թե հողատիրական է, երբ կալվածատերը ստանում է միայն հարկեր, երկրորդը՝ հողատնտեսական, երբ կալվածատերը ինքն է մշակում հողը, բռնի աշխատել տալով գյուղացիներին, որտեղից իբրև թե սկիզբն է առնում ճորտությունը:

Այս հայացքը լոկ տեսական կերտված է: Պատմական իրականությունը կոլոնների զանազանությունն այլ կերպ է ներկայացնում: Կա երկու տեսակ կոլոն, մինն է **originalis**, «տեղական», մյուսը՝ **inquilinus** «եկաբնակ». առաջինը հաստատված է մշտապես և ժառանգաբար հողի վրա, երկրորդը մշակում է հողը լոկ ժամանակավորապես: Առաջինը մուծված է հարկային ցուցակի մեջ **adscripti censibus** է, և պարտավոր է վճարել պետական հարկ, բացի կալվածատիրոջ հասանելի հողագնից: Երկրորդը չէ ցուցակագրված և հարկ չէ վճարում պետության, այլ որպես ազատ ձեռք իր հողային աշխատանքի համար ստանում է վարձ հողատիրոջից: Առաջինը կոչվում է այս պատճառով **adscripticius** «ցուցակագրված», երկրորդը՝ ազատ կոլոն:

---

[1] **A. Piganiol,** L'impôt de capitation sous le Bas-Empire, p. 61.

Ցուցակագրված կոլոնների ղժբախտությունը սկսվում է այն օրից, երբ պետական գանձարանը հրահանգում է, որ կալվածատերերը պատասխանատու են իրենց կոլոնների հարկերի գանձման համար[1]: Կալվածատիրոջն է պատկանում հողը և ուրեմն նա է պատասխանատուն իր հողից պետության հասանելիք հարկի համար: Հեռանա գյուղից կոլոնը, ուրիշ ապարեզ ընտրե, կամ մինչև իսկ մեռնի, միևնույն է, նրա բաժին հողի հարկը պարտավոր է վճարել կալվածատերը:

Այս օրենքն արդեն բավական է, որ կոլոնը կորցնե տեղաշարժի ազատությունը և մեխվի հողին: Կալվածատիրոջ անձնական շահը պահանջում է, որ չթողնե կոլոնին լքել իր հողը: Կոլոնը շղթայվում է հողին: Որպեսզի ապահովե տուրքերի գանձումը կալվածատերը հարկ է համարում ձեռք դնել գյուղացու գույքի վրա, պատրաստ գրավելու եթե գյուղացին թերանա իր պարտքը կատարել: Առաջ կոլոնը պետության հպատակ էր, այժմ դառնում է կալվածատեր անհատի հպատակ, անպաշտպան, ենթակա նրա կամքին: Նախկին **colonus** դառնում է **servus**:

Այս փոփոխությունը արձանագրված է արդեն IV դարի վերջերին: Արկադիոս և Հոնորիոս կայսրերը խոստովանում են, որ ցուցակագրված կոլոնները, **adscripti censibus**, գրեթե մատնված են ճորտության **quadam servitute dediti**:

Ազատ կոլոնների դրությունը ևս վատթարանում է: Օրենք կար, որ որդին ժառանգում է հոր վիճակը, լինի պլեբեյ, թե կոլոն: Անաստասիոս կայսրի († 518) օրենքով, մի կոլոն որ 30 տարի աշխատում է միևնույն կալվածում, չի կարող այլևս թողնել իր տեղը և մնում է կապված հողին[2]: Կարծում են, որ այս օրենքը վերաբերում է իսկապես ազատ կոլոններին: Սրանք համենայն դեպս չեն իջնում մինչև ցուցակագրված կոլոնների աստիճանը, պահելով որոշ ազատություն:

Հռոմեական վերջալույսի այս կարգերը հարատևում են բյուզանդական շրջանում: Փոխվում են միայն անունները: Սեփականատեր գյուղացիների հողերը կոչվում են *ὁμόκενσα*, կոլոններինը՝ *ὁμόδουλος*, պլեբեյնու վերակոչվում է *χωρίτης* կամ *κύριος*: Ազատ ընդունում է ավելի որոշ անուն *μισθωτός* «վարձկալ կամ վարձավոր», իսկ հետագայում *μορτίτης* «բաժնեվոր», ցուցակավոր կոլոնը պահում է իր անունը հունական թարգմանությամբ՝ *ἐπανόφραφος*: Ութերորդ դարում Իսավրյան օրենսդրությամբ կոլոնները հայտարարվում են արձակ իրենց հողային կապյալ դրությունից:

---

[1] C. J. XI, 50, 2. **A. Piganiol**, L'Impôt ..., p. 83.

[2] C. J. XI, 48, 19. **A. Piganiol**, p. 85.

Արևմտյան մեծ հարևանի գյուղացիության վիճակը կարող է ուղեցույց լինել մեզ համար և ոչ միայն տեսական նկատումով: Փոքր Ասիան անծանոթ երկիր չէ իրանական քաղաքակրթության: Աքեմենյան աշխարհակալների օրերից նա ենթակա է եղել Իրանի ոչ միայն քաղաքական իշխանության, այլև կրել է սատրապական տնտեսության ազդեցությունը: Փոքր Ասիական երկրները մտնում էին Դարեհի հարկային սիստեմի մեջ: Սելևկյան շրջանում ևս միևնույն տերերն էին և կառավարության միևնույն եղանակը: Սասանյանների ժամանակ անմիջական դրացիներ էին և փոխադարձ ազդեցության տակ: Խոսրով Նուշիրվանի նորոգումները, նրա մուծած հարկային նոր սիստեմը, կարծում են, պարզ ընդօրինակություն է Բյուզանդական կարգերի, որ հիմնված են Դիոկղետիանոսի ժամանակ և նրա ձեռքով:

Ընդհանուր նմանություն, շոշափման կետեր, հնարավոր են Բյուզանդիայի և Իրանական աշխարհի հարկատու ժողովրդյան դրության մեջ: Բյուզանդական կարգերը, որ շատ ավելի որոշ են և աներկբա, կարող են առաջնորդել գեթ ուղիղ շավղի վրա դնելու իրանական և նրա հետ հայ գյուղացիության վիճակի ուսումնասիրությունը: Մինչև Սասանյանների անկումը Հայաստանը մնում է, ինչպես էր, իրանական դասական քաղաքակրթության մանրանկարը:

Առաջին հարցը վերաբերում է հողերի տեսակին, ինչ որ կոչվում է «պետական» և «կալվածատիրական»: Որ Արշակունի թագավորական տունը ուներ սեփական հողեր, նախարարական տների նման, անտարակույս է: Սակայն դժվար է ենթադրել, որ ամբողջ երկիրը բաժանված լիներ թագավորի և նախարարների և ընդհանրապես ազատների միջև: Պետք է կարծել, որ հողի մեծագույն մասը պետական էր, ուրեմն թագավորական, բառի լայն մտքով: Առտնին կյանքում աչքի չէր ընկնում այս տարբերությունը, մանավանդ որ ամբողջ պետությունը և երկիրը կապված էր Արշակունի անվան: Ուստի մատենագրության մեջ ևս տարբերությունը չի նկատվում: Արտագերս բերդը, ըստ Փավստոսի, գտնվում է «յերկրին Արշակունեաց»: Ասել է թե կա Արշակունյաց երկիր, ինչպես կան Մամիկոնյան, Արծրունյան և այլ նախարարական երկրներ:

Մյուս կողմից՝ պատմագիրը գիտե ոչ միայն տերություն Արշակունյաց, այլև «տէրութիւն թագաւորութեան Հայաստան երկրի»[1]: Ի՞նչ է արքունի տունը և ոստանը, որպես հողային հասկացողություն: Արդյոք չե՞ն թաքցնում իրենց մեջ արքայական և պետական հողերի գրեթե մոռացված և ձուլված տարբերությունը:

Արշակունյաց տունը, ուրիշ բան չէր, եթե ոչ մի մեծ նախարարություն: Նա էր, որ կերտել էր մյուս տները ըստ պատկերի յուրում: Գուցեև

[1] **Փավստոս Բուզանդ**, Դ, գլ. 2:

արքայական տան և պետության հողերի հասկացողությունը մի էր և չէր զատվում միմյանցից: Սակայն, նրանց անկումից հետո տեսնում ենք ոստանիկ ազատներ, որ ժառանգել են բուն Արշակունի հողերը, կամ մի մասը: Մնացածը ճանաչվում է պետական սեփականություն, երբ վեհապետական իրավունքն անցնում է Սասանյան միապետներին:

Հիմք կա ամեն պարագային զանազանելու երկու տեսակ հող՝ թագավորական և նախարարական, և կամ պետական ու կալվածատիրական, սրա մեջ հաշվելով արքայական տան, նախարարների և եկեղեցու հողերը: Տարբեր հողերը ենթադրում են և տարբեր գյուղացիներ: Արդյոք կարելի՞ է առաջանալ և տարբերություն տեսնել շինականի և ռամիկի մեջ, մեկը համեմատելով պլեբեյի հետ, մյուսը՝ մերձ համարելով կոլոնի[1]:

Փավստոս խոսելով Արշակի գործերի մասին, ասում է. «Եւ սկիզբն գործակալութեանն հազարապետութեանն, աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած **դեհկանութեան**, շինականաշէն ազգն Գնունեաց, հազարապետն ամենայն երկրի»:

Նախադասությունը ճոռոմ է, բայց իմաստը պարզ է: Արշակ թագավորը սկիզբ է դնում կամ վերականգնում է հազարապետության գործակալությունը, այսինքն՝ պաշտոնը, և հանձնում է Գնունյաց ազգին: Հազարապետությունը «աշխարհատես խնամակալութիւն է», «աշխարհաշեն դեհկանութիւն», իսկ Գնունիք՝ շինականաշեն:

Ի՞նչ է նշանակում իրապես հազարապետություն, և ի՞նչ է դեհկանությունը: Պարսից դրան հազարապետը նույնն էր, ինչ որ վզուրկ հրամատար (ոչ հրամանատար): Հռչակավոր Միհրներսեհին, Հազկերտ II-ի մինիստրին, Եղիշեն անվանում է հազարապետ, մինչդեռ ինքը Միհրներսեհ իրեն կոչում է վզուրկ հրամատար <ի> Երան և Աներան: Հրամատարը Սասանյան պետերի առաջին և գլխավոր մինիստրն էր: Նրա ձեռքի տակ էր և պալատական թիկնապահ գունդը, որտեղից ծագում է և նրա հազարապետ կոչումը: Պարսից հազարապետը ավելի արտաքին գործոց մինիստրի է նմանում, մինչ Հայոց մոտ թվում է, որ ներքին գործոց հետ կապ ունի:

Փավստոսի խոսքերից ակներև է, որ հազարապետին ենթակա էր շինականությունը, ուրեմն հարկերի գանձման հոգսը նրա վրա էր: «Շինականաշեն» Գնունյաց ազգի պաշտոնը կապվում է «դեհկանության»: Հինավուրց տերմին նոր բովանդակությամբ: **Դեհ**, որ ժամանակով նշանակում էր աշխարհ, հետզհետե սեղմվելով հանգում է գյուղի: **Դեհկանն** էլ,

[1] Վերոհիշյալ Սողդի **ռամական**-իկ բառը հավանորեն նույնն է, ինչ որ Գահնամակի **ռամական**-ը, որ նոր լույս է սփռում, **ռամական նամա** ցուցակի վերա: Նախարարական հեծյալների ցուցակն է այսպես կոչվում: Հիմ կա, ուրեմն, կարծելու, որ **ռամիկ, ռամական** նախարարական գյուղացիներն են, որոնցից կազմված էր այրուձին:

դեհի պետը, ազնվական բարձրությունից իջնում է մինչև հասարակ գյուղացու աստիճան:

Սասանյան շրջանում դեհկանը գյուղական փոքր կալվածատեր ազնվական էր, և երբեմն այնքան աննշան հողատեր էր, որ չէր տարբերվում սովորական գյուղացուց[1]: Հաճախ կառավարության ներկայացուցիչներն էին դեհկաններն իրենց տեղերում, որոնց հանձնվում էր առավելապես հարկերի գանձումը: Դեհկանի վարչական պաշտոնը մի կողմից և իր անձնական դրությունը, որպես գրեթե գյուղացի, մյուս կողմից թելադրում են կրկնակի իմաստ դեհկանություն բառի, հարկահանություն և շինականություն: Փավստոսի մոտ կարծես գործ է ածված դեհկանություն որպես հոմանիշ հազարապետության և ուրեմն հարկահավաքի իմաստով: Նույն հեղինակը հազարապետությունը հակադրում է սպարապետության: Մեկի տեսչության տակ է գտնվում շինականությունը, հարկատու դասը, մյուսը՝ տեր է զինվորական ուժերի, և գլուխ ազատ դասի, որի պարտականությունը հանդեպ արքայական գահի զինվորական ծառայություն էր և ուրեմն նրանց այրուձին կազմ ու պատրաստ պահելը սպարապետի գործն է:

Արդ եթե Արշակունի թագավորն առանձին հազարապետ ուներ հարկերը գանձելու համար, նա արքայական տան գյուղերի համար չէր: Այս դեպքում ամեն մի նախարարական տուն պետք է իր հազարապետն ունենար, ինչ որ անհավանական է, և որի մասին ակնարկ չկա մատենագիրների մոտ: Պետական հազարապետն ավելի լայն շրջանի շինականության համար էր: Եթե միայն արքայական գյուղերի տնտեսության հսկիչ լիներ, թագի անկումից հետո պիտի վերանար: Այնինչ, հազարապետության պաշտոնը մնում է և կոչվում է «հազարապետ աշխարհի»: Եղիշեն ավելացնում է՝ «իբրեւ զհայր վերակացու համարեալ էր աշխարհականաց քրիստոնէից», որով հաստատվում է Փավստոսի խոսքերը, թե հազարապետը հարկատու դասի, աշխարհականության, խնամակալն ու հոգածուն էր:

Արշակունյաց անկումից հետո պարսիկները նոր աշխարհագիր են անում, հարկերի չափը որոշում և նշանակում պարսիկ հազարապետ: Նրանց ժամանակ և հետո պետք է ենթադրել, որ կար հոծ շինականություն, որ մշակում էր իր բաժին հողը որպես սեփականատեր: Կարող ենք անվանել ազատ շինականություն, նրանց գյուղերը **vici libri**: Մեծամեծ նախարարների, գավառապետների և գործակալների կից Փավստոս հիշում է «դասապետք շինականաց»: Սրանք վերաբերում են հավանորեն այս հողատեր շինականության[2]:

Պետական շինականությունից զատ է կալվածատիրականը կամ

---

[1] **Th. Nöldeke,** Tabari, վերջին գլուխը:

[2] **Փավստոս Բուզանդ,** Դ, 51:

նախարարականը: Կլասիկ հեղինակները մռայլ գույներով են նկարագրում Իրանի գյուղացիությունը: Ամմիանոս Մարկելինոսը հավատացնում է, որ պարսիկ ազնվականությունն անգամ մահվան և կյանքի իրավունք ուներ ստրուկների և ժողովրդի վրա: Հեծելազորի ետևից ընթանում էր հետևակ խուժանը՝ մատնված մշտական ստրկության, **addicta perenni servitio**, կարծես զինվորական ծառաներ լինեին, **calones**[1]:

Ավելի հին պատմիչ Հուստինոսը բաժանում է պարթև հասարակությանը ազատների և ստրուկների, **liber** և **servi**[2]:

Անշուշտ գույները խտացած են և վերաբերում են հավանորեն ոչ բոլոր շինականության, այլ առավել իշխանական գյուղացիներին: Սրանք, իրոք, **servi** էին: Խուսափում են գործածել ճորտ բառը, որը թեև հազարամյա հասակ ունի, բայց մեզ զբաղեցնող շրջանի նկատմամբ շատ նոր բառ է: Հետաքրքրականը հենց այն է, թե ինչպես էին կոչում հնում, այն ինչ որ հետագայում ճորտ էր ասվում: Բառն ինքնին շատ բան կպարզեր գյուղացիների դրության մասին, ինչպես և ստրուկ բառի ստուգաբանությունը, որ տակավին անհայտ է:

Նույն Հուստինոսը պատմում է, որ պարթևական ազատները սովորություն ունեին պատերազմի տանելու իրենց սերվերին, նախապես ընտելացնում էին նրան զինական արվեստի և հեծելության: Կասկած չկա, որ խոսքը ազատների գյուղացիների մասին է: Հայոց մեջ ևս հիշվում է «ռամիկ այրուձի», «ռամիկսպաս զորք», թերևս, «ռամիկ սպասզորոք», որ հավանորեն կազմում էին նախարարների հպատակ գյուղացիները: Զինաշարժի վարժեցնել կամ ձի նստել սովորեցնել կարող էր իշխանը իր սեփական գյուղում և իր գյուղացիներին:

Տարօրինակ է, որ չի հիշվում երբեք **շինականի** այրուձի: Կարելի՞ է հետևեցնել, որ ռամիկը իշխանական գյուղացին է:

Արիստոտելին վերագրված, բայց ապահովապես նրան չպատկանող **«Տնտեսություն»** գրվածքում հիշվում են մի քանի տնտեսություններ, ի միջի այլոց սատրապականը: Սրա եկամուտների մեջ կարևոր է համարվում հողային հարկ *ἐκφόριος* և *δεκάτη*: Գիտնականները կարծում են, որ մեկը արքայական հողերի հասն է, մյուսը՝ պետական: Թերևս, ավելի ճշմարիտ կլիներ ասել, որ երկու տեսակ հարկը երկու կարգի գյուղերից է, սատրապական և պետական: Նույնը ասելու է և հայ սատրապների՝ նախարարների նկատմամբ: Հայ հեղինակները վկայում են, որ նախարարները և ազատները ունեին **գյուղեր** և **ագարակներ**: Թե՛ Արշակունի և թե՛

---

[1] **Ammianus Marcellinus,** XXIII, 6.

[2] Տե՛ս մեր «Հայաստանը Հուստինիանոսի դարաշրջանում», էջ 385 (ռուսերեն):

Սասանյան թագավորները վարձատրել կամենալով իշխաններին պարգևում էին «գիւղեան և ագարագս»: Ագարակ ասելով պետք է հասկանալ այն հողերը, որ մշակում էին իշխաններն իրենք անձամբ, թե ծառաների միջոցով և որ կազմում էին նրանց անձնական տնտեսությունը: Փավստոսի պատմությունը Խաղի եզների մասին ցույց է տալիս, որ եկեղեցին ևս ուներ սեփական տնտեսություն, նմանելով նախարարական տներին: Եկեղեցին շատ կետերում նախարարացած էր:

Թվում է, որ նախարարների կամ տանուտերների հետ հաճախ հիշվող ազատները կամ **ազատանի**, կազմում էին հայ հողային ազնվականության ավելի ցած դասը: Ազատ բառը միայն ընդհանուր կոչում չէր նախարարականության դասի, այլ նշանակում էր նաև մանր ազնվականություն, նման Իրանի ազատներին:

Հավանական է, որ նրանք սկզբնապես Արշակունիների հետ Հայաստան տեղափոխված հաղթական Պարթև ընտանիքի զավակներն էին: Պարսիկ ազատները, ինչպես ենթադրվում է, արիական ցեղի մնացորդներն էին: Հայ ընկճված իրականությունը չի կարող այդքան հեռու գնալ և բարձրանալ մինչև Արմեններ: Բառը պարթևական ծագում ունի և կրողներն ևս ամենայն հավանականությամբ Պարթև տոհմեր էին: Հետագայում սրանք կոչվում են հեծյալ, ինչպես որ Իրանի ազատները կազմում են Սասանյան շրջանում **aswar**, այսինքն՝ ձիավորների դասը: Ազատանի ապրում էր գյուղերում և խաղաղ ժամանակ զբաղված էր իր տնտեսությամբ և գյուղերով: Պարսիկ դեհկան ազնվականը դառնում է գյուղի քետխուդա և ի վերջո ձուլվում գյուղացիության հետ: Հայ ազատանին ևս նման բախտ է ունեցել:

Պատահական չէ և ոչ էլ գրական ճամփով է, որ հին տանուտերը եկել դարձել է հոմանիշ գյուղական քետխուդայի: Հասարակական վայրէջք է: Փավստոսին ծանոթ **Կարճազատները** հավանական կարապետներ էին վայրէջի վրա կանգնած ազատների: Արևելյան պահպանող ոգին հիմ է տալիս համեմատելու նրանց նոր ժամանակների մանր մելիքների և բեկերի հետ, որոնցից շատերը գյուղական քետխուդաներ էին և ուրիշները ոչնչով չէին զանազանվում գյուղացիներից, միայն ազատ էին հարկերից: Խոշոր նախարարական տները, նրանք որ «գաւառատեարք» էին և «կուսակալք, կողմնակալք», և կազմում էին փոքր իշխանական մարմիններ, գուցե և առանձին տնտեսություն չունեին: Հինգ հայտնի ինքնավար իշխանությունները, որոնց անկախությունը ճանաչված էր Պարսից և Բյուզանդիայի կողմից, կարող էին տիպար համարվել հայ մեծամեծ նախարարության, ոչ միայն բդեշխների, այլև Բագրատունի, Արծրունի և Մամիկոնյան տների:

Սակայն, երբ զարգանում է սեպուհական իրավունքը և նրա զորությամբ մեծ տները քայքայվում են և վեր ածվում մանր սեպուհական կենտրոնների,

պետք է ենթադրել, որ սրանք ոչ միայն տեր էին գյուղերի, այլև ունեին ագարակներ իրենց անմիջական խնամածության տակ։

Նախարարական կամ կալվածատիրական հողատիրության իրավական բնույթը իր մանրամասնության մեջ հայտնի չէ։ Կան տեսակ տեսակ հողեր՝ հայրենի, պարգևական և սակագին։ Սրանց հարաբերությունն անմիջական տերերի հետ կարող էր միակերպ չլինել։ Երկրի վեհապետի դիրքը ևս սրանց հանդեպ մութ է։

Չի կարելի անգամ վստահել, որ նախարարական հողերը բոլորն էլ ազատ լինեին պետական ծանրությունից։ Դվինի ժողովի կանոններից մեկը հայտարարում է, որ եկեղեցականները «ընդ ազատաց տոհմին են կարգեալ», որ եկեղեցու հողն ու ջուրը ազատ է, և երեցների տները «ի դիւանին եղեալ են, բայց միայն **զհասն տալ յարքունիս**»։ Ասել է, թե ազատ հողը պարտավոր էր որոշ հաս տալ պետական գանձարանին։ Այս ակամա խոստովանությունը կարևոր է։ Եկեղեցին արտացոլում է նախարարական միջավայրի կարգերը և իր ազատությունը նախարարականի պատճեն է։ Իրավունք ունենք կասկածելու, որ նախարարական հողերին ևս անծանոթ չէ եղել արքունական հասի վճարումը։

Այս պարագան նոր լույս է սփռում դեհկանների հարկահանության վրա։ Ոչ թե Սասանյան բյուրոկրատիան էր նրանց հանձնել հարկերի գանձումը, այլ հին իրավունք էր, որ պահել էին փառքի վերջալույսին գեթ գյուղական նեղ շրջանում։ Այս նշանակում է, որ պետական գանձարանը ստանալիք ուներ նաև նախարարական գյուղերից։ Ուրիշ խոսքով Բյուզանդական կոլոնների նման նախարարական գյուղացիք վճարելու էին **canon** հողատիրոջ և որոշ հաս կամ հողահարկ պետության։

Եթե միայն ճիշտ է այս ենթադրությունը, կարելի է ասել, թե պատրաստ է այն դուռը, որ տանում է **կոլոնատից** դեպի **սերված**, միայն թե մյուս պայմանները ներեն։ Այս պայմանների մեջ պետք է դասել ամենից առաջ հողի և բնակչության հարաբերական չափը։ Գյուղացու շղթայումը հողին հետևանք է այն երևույթի, որ աշխատող, մշակող ձեռքերն ավելի քիչ են եղել քան հողը և ավելի թանկ։ Անընդհատ պատերազմների և այլ աղետների պատճառով Բյուզանդիայում բնակչությունը նոսրացել էր և բավական չէր ւայնածիր տարածությունները մշակելու համար։ Հողատերերի և պետության շահերը համերաշխաբար պահանջում էին չթողնել, որ հեռանան միանգամ ձեռք բերած աշխատող ուժերը, ուրեմն, գյուղացուն մեխել հողին և զրկել նրան տեղաշարժի և անձնական ազատության իրավունքից։ Սրանով ստեղծվում է կոլոնի համար այն դրությունը, որ կոչվում է **սերված**։

Հայաստանում պակաս չէին սով, սրածություն և անթիվ կոտորածներ։ Սակայն, որքան նվազում է ժողովուրդը, ավելի մեծ չափով պակասում էր և

հողատեր ազնվականությունը: Քաղաքական աղետների առաջին զոհերը ազատներն էին:

Մյուս կողմից երկրագործության պիտանի դաշտերը այնքան մեծ ծավալ չունեին, որ նրանց մշակման համար ձեռքերի սակավություն զգացվեր: Հիմք կա կարծելու, որ նախարարական կարգերի ծաղկման շրջանում միշտ հողն էր, պակաս քան մարդը: Վրացերեն լեզուն ունի **բոգանի** բառը, որ նշանակում է հողազուրկ գյուղացի, նման ռուսական «բոբիլ»-ի: Սա ուրիշ բան չէ եթե ոչ հայերեն բռկանի, որ երբեմն ունեցել է այդ իմաստը և իր հետ տարել է և պահել վրաց լեզվում: Կարևոր տերմին է թվում և ոչ սովորական բառ, և հին վկա սակավահողության: Հողի և աշխատանքի համեմատական չափը նպաստավոր պայման չէր, որ **սերվաժը** բողբոջեր Հայաստանում արևմտյան ֆեոդալականության հատուկ երանգներով:

Կարիք չկա նկատելու, որ այս բոլորը մութ հարցեր են, կարոտ տակավին հետաքննին լուսաբանության: Մեր անցողակի նկատողությունները վկայում են խնդրի բարդությունը[1]: Թափանցել հինը դժվար է, երբ նոր ժամանակների գյուղական հողային պայմանները, ո՛չ պաշտոնական, այլ սովորութային գծերը մնում են դեռ այնքան սակավածանոթ: Թերևս գտնվին ընթերցողներից հետաքրքրվողներ, որոնք կարձանագրեն գեթ այն միջավայրի, որտեղից ելած է, հողատիրական և հարկային առանձնահատկությունները: Գիտենք, որ այդպիսիները կան զանազան վայրերում և զանազանապես: Սրանով փրկած կլինեն ինչ որ կորուստի է մատնված և որոշ նպաստ կբերեն, թերևս, և անցյալի ուսումնասիրության (7):

---

[1]Նույն հարցերին է նվիրված և մեր հոդվածը՝ «L'Aspect iranien du servage», extrait du «Recucil de la Société Jean Bodin», Bruxelles, 1937 (8):